

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՇՔԵՐԹ

*Ա. ՊՈՂՈՍՅԱՆ*

Եռուզեռ է՝ նորակառույց
Մեր դպրոցի շենքի մոտ,
Ու ես էլ եմ ելնում փողոց
Այս մայիսյան առավոտ:
Ու ես էլ եմ շարքը մտնում,
Որպես փոքրիկ թմբկահար,
Իմ թմբուկով ոգևորում
Ընկերներիս անհամար:
Մենք մեր փոքրիկ ձեռքերի մեջ
Կարմիր դրոշն ենք տանում,
Ու մեր բախտն է ժպտում անվերջ
Նրա հրե ցոլքերում:
Մեր աչքերում հուր ու կրակ,
Ալ վզկապները կապած՝
Մենք մտնում ենք հրապարակ,
Ուր մեծ Լենինն է կանգնած:
Նրա պայծառ դրոշի տակ
Չենք մոռանում ոչ մի պահ՝
Լինել ազնիվ, լինել շիտակ,
Լինել ընդմիշտ կարգապահ:

## ՄԱՅԻ՛Ս Է, ՄԱՅԻ՛Ս...

*Վ. ԴԱՎԹՅԱՆ*

Մայի՛ս է, մայի՛ս,
Քամին սոսափում
Ու ծաղիկներ է
Ծառերից թափում:
Իսկ հեռվից դարձած
Մի ժիր ծիծեռնակ
Բույնն է նորոգում
Մեր տան քիվի տակ:
Մայի՛ս է, մայի՛ս,
Ծաղկաբույր օդում
Թմբուկն է թնդում,
Փողն է որոտում,
Ծփում են հպարտ
Դրոշները ալ,
Երգն է կարկաչում
Առվի պես զուլալ:

Մայի՛ս է, մայի՛ս,
Պայծառ առավոտ,
Ինչ թա՛րմ են շնչում
Հող, ծաղիկ ու օդ:
Դու վազի՛ր դաշտով,
Ծաղիկներ քաղիր,
Առվակների հետ
Երգի՛ր, ծիծաղի՛ր,
Բայց հիշիր, որ այս
Մայիսի համար,
Այս ծաղիկների
Ու լույսի համար
Պապերդ մի օր
Խիզախ մարտնչել
Եվ այս հողն իրենց
Արյամբ են թրջել:




Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 5
ՄԱՅԻՍ
1956 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ
ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԱՆՀԱՅՏ ՄԱՐԴԻԿ

ԱԶԱՏ ՇԱՀԻՆՅԱՆ

## ՀՐԱՇԱԼԻ ՄՏԱՀՂԱՑՈՒՄ

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Մեր արկածների մասին մինչև այսօր էլ ոչ ոք չէր իմանա, եթե անսպասելի մի առիթով այս ամբողջ պատմությունը ես չպատմեի քաղաքից վերջերս մեր տուն եկած հյուրին։

Զմռան մի օր, երբ դասերից հետո Վահանենց տուն գնացի, տեսա նա փռվել է հատակին գցված կարպետի վրա և բարձրաձայն ինչ-որ գիրք է կարդում։ Տանը ոչ ոք չկար։ Վահանն այնքան էր տարվել իր կարդացածով, որ չզգաց իմ ներս մտնելը։ Նա միայն այն ժամանակ հայացքը գրքից հեռացրեց, երբ ես պատահմամբ դիպա դռան մոտ դրված վառարանին, և քիչ մնաց ցած թափվեին ծխահան խողովակները։

— Վազգե՛ն, այդ դո՞ւ ես... Ինչ լավ է եկար,— ուրախ ասաց նա և ձեռքի գիրքը մեկնելով ինձ՝ ոգևորված հարցրեց.

— Կարդացե՞լ ես,— չսպասելով իմ պատասխանին իսկույն ավելացրեց,— գիրք եմ ասում, է՜, երկրորդ անգամ եմ կարդում. ասենք երկու անգամն ի՞նչ է որ... Մարդ հազար անգամ էլ կարդա՝ էլի չի ձանձրանա։

Ես հետաքրքրված վերցրի նրա ձեռքից գիրքը, որի կազմի վրա խոշոր տառերով գրված էր. «Թիմուրը և իր ջոկատը»։

— Սա ես կարդացել եմ։ Ուզում ես ասեմ ինչի մասին է։ Էն որ... Թյո՛ւ, մոռացել եմ, դե, գիտե՞ս, սա ես շատ շուտ եմ կարդացել, դրա համար էլ ոչինչ չեմ հիշում,— արդարացա ես, տեսնելով Վահանի կասկածոտ հայացքը։

— Դե, գիտես, կարդալը՝ կարդալ, բայց ա՛յ, ուրիշ է, երբ դու էլ մտածես մի այնպիսի բան անել, որ բոլորը գոհ մնան։

Ահա թե ինչպիսին է Վահանը։ Հենց մի հետաքրքիր գիրք կարդա, անմիջապես կպատրաստվի նմանվել գրքի հերոսին։ Ճիշտն ասած, ես էլ եմ այդպես։ Ա՛յ, անցյալ տարի ամռանը, մեր գյուղի գրադարանից մի հետաքրքիր գիրք վերցրի, որի մասին էլի Վահանն էր ինձ պատմել։ Դա Թոմ Սոյերի ու նրա հավատարիմ ընկերոջ՝ Հեկլբերի Ֆինի արկածների մասին էր։ Գիրքն ինձ այնքան էր դուր եկել, որ ամենքին պատմում էի այդ մասին։ Նույնիսկ գիշերները երազումս տեսնում էի, թե ինչպես եմ Թոմի ու Հեկի հետ լաստով լողում լայն գետի վրա, մտնում մութ ու ահավոր քարանձավները, ուր թափված էին լինում ժանգոտած զենք ու զրահներ, ոսկորների կույտեր։ Ես չէի վախենում նույնիսկ այն ժամանակ, երբ մութ քարանձավում չարագուշակ կռնչում էին բվերը։ Երազումս Թոմի ու Հեկի նման ես էլ էի փորում ծառերի արմատներն ու նրանց տակից բազմաթիվ գանձեր հանում։ Գրպաններս լիքը-լիքը լցնում ու ձեռքով պինդ պահած գալիս էի տուն։ Քնից արթնանալուն պես ստուգում էի մահճակալի գլխին գցած շալվարիս գրպանները, բայց իզուր... Երազում գտած գանձերի փոխարեն գրպանիցս թաշկինակն էի հանում, մեկ էլ հայրիկիս տված ինքնահոս գրիչը։ Ես մի անգամ Վահանին առաջարկեցի Թոմ Սոյերի նման մի խումբ կազմել ու մեր գյուղից հեռու գնալ արկածներ որոնելու։ Բայց նա ձեռքն անտարբեր թափ տվեց օդում, և այդպես էլ ոչինչ դուրս չեկավ։

— Այս գիրքը քեզ համար Թոմ Սոյերի արկածները չի, հասկանո՞ւմ ես։ Էստեղ մարդիկ գործե՛ր են անում, էնպիսի գործե՜ր, որոնց մասին քո Թոմն ու Հեկը երազել անգամ չէին կարող,— կարծես գուշակելով, թե ինչ եմ մտածում, ասաց Վահանը։

Եվ նա ոգևորված սկսեց պատմել, թե ինչպես այս գիրքը կարդալու ժամանակ իր գլխում հրաշալի միտք է հղացել... Թիմուրի նման մի խումբ

կազմել և օգնել այն ընտանիքներին, որոնք օգնության կարիք են զգում։

— Ա՛յ, թե հետաքրքիր կլինի, հա՞,— ասաց Վահանը,— ամբողջ գյուղը կսկսի խոսել մեր կատարած գործերի մասին, բայց թե ովքեր են, իհարկե, չեն իմանա, որովհետև այդ բոլորը մենք գաղտնի կկատարենք։

— Իսկ ինչո՞ւ գաղտնի, եթե մենք օգտավետ գործ ենք անելու,— հարցրի ես։

Վահանը դեմքին լուրջ արտահայտություն տըվեց և ասաց.

— Դա կարևոր է, հասկանո՞ւմ ես։ Այդպես մի տեսակ խորհրդավոր կլինի, համ էլ, երբ մարդիկ իրենց լավ գործերի մասին պարծենալու համար պատմում են ամենքին, դա էսպես ասած՝ լոպազություն է։

Ճիշտն ասած՝ այդ ամենը ինձ այնպես ոգևորեց, որ ես առաջարկեցի հենց տեղն ու տեղը որոշել, թե ովքեր են լինելու մեր խմբի անդամները։ Վահանին անչափ դուր եկավ իմ առաջարկը և մենք անմիջապես գործի անցանք։ Պարզվեց, որ մեր խումբը այնքան էլ մեծ չէր լինելու, մեզ էլ հետը հաշված՝ ընդամենը յոթ հոգի։

— Բա էդքան բի՞չ... Չէ, իմ կարծիքով դա բանի նման չի լինի,— ասացի ես։

Վահանը, որ մինչ այդ ձեռքերը շալվարի գըրպանները խոթած՝ հայարտ-հայարտ անցուդարձ էր անում սենյակում, մի պահ կանգնեց և փոքր ինչ մտածելուց հետո փիլիսոփայելով ասաց.

— Դա, էսպես ասած՝ տակտիկայի բան է։ Ես այդ մասին, ինչպես հարկն է, մտածել եմ։ Եթե բոլոր տղաներին առաջարկենք մասնակցել մեր խմբին, նրանք ուրախությունից գլուխները կկորցնեն։ Բայց հո չե՞նք կարող ամենքին ընդունել։ Նրան կընդունենք, ով լավ է սովորում։

Ես չառարկեցի։ Արդեն բավական ուշ էր։ Հարկավոր էր տուն վերադառնալ։ Ես Վահանից խնդրեցի այդ գիրքը։

Մինչև ուշ գիշեր կարդում էի։ Մերոնք վաղուց քնել էին։ Միայն մեկ-մեկ տատս էր տնքալով բարձրանում պառկած տեղից ու մեղմ ձայնով ասում.

— Ա՛յ բալա, քնի՛ր, է՛, ախր էդուց դպրոց ես գնալու, կուշանաս, մատա՛ղ...

## ԼՔՎԱԾ ՋՐԱՂԱՑԸ

Մյուս օրը, ֆիզիկայի ժամին, երբ ուսուցչուհին պատմում էր նոր դասը, Վահանը ինչ-որ ծալծլված թղթի կտոր շպրտեց նստարանիս վրա։ Ես շտապով ճանկեցի այն և անհամբերությամբ բաց արի. «Դասերից հետո հայտնիր տղաներին, որ երեկոյան ժամը 7-ին հավաքվեն քանդված ջրաղացի մոտ»։

Նշված ժամից դեռ մի քիչ էլ շուտ հավաքվեցինք խարխուլ ջրաղացի մոտ, որը գյուղում հորնդացող էլեկտրաղացի ձայնից կարծես սարսափած կուչ էր եկել ձորում՝ միայնակ ու անօգնական։

Ահա մենք կանգնել էինք այնտեղ և անհամբեր սպասում էինք Վահանին, իսկ նա հակառակի նման ուշանում էր։

— Երևի նա իսկի էլ չգա, հը՞, տղե՛րք,— առաջինը անհանգստացավ Սարգիսը և ցրտից կուչ եկած ձեռքերն սկսեց արագ իրար շփել։

— Մենք էստեղ դողում ենք ցրտից, իսկ նա գուցե բոլորովին մոռացել է մեր մասին,— ավելացրեց Գևուշը։

Չգիտեմ՝ տղաների անհանգստությունը դեռ որքան կշարունակվեր, եթե այդ պահին Արամը չըբացագանչեր.

— Եկեք ջրաղացը մտնենք։ Այնտեղ մի լավ կրակ կվառենք ու կտաքանանք։



Մենք մաքրեցինք մուտքի մոտ կուտակված ձյունը։ Բացեցինք հին, խարխլված դուռը, որը կարծես նորից կենդանություն ստանալով ճռընչաց։ Մտանք կիսամութ, քարակոփ պատերից ներս։ Նրա կիսով չափ փլված կտուրից ցուրտը առատորեն ներս էր լցվում։ Արամն ու Վարդգեսը փտած փայտի մի քանի կտորներ գտան և դարսելով իրար վրա, վառեցին։ Խոնավ փայտերը ճարճատեցին։ Կրակի մեծ բոցը լուսավորեց ջրաղացի սևացած պատերը։ Մենք պպզեցինք կրակի շուրջը։ Տղաները նորից սկսեցին հարցերի տարափ տեղալ.

— Վազգե՛ն, դե վերջապես ասա, ինչի՞ համար ենք հավաքվել այստեղ։

— Դե, դու ուղղակի բացատրիր մեզ, ինչ որ հարկն է։

— Չափազանց կարևոր գործի համար ենք կանչել,— ասացի ես։



— Իսկ դա խելքի մոտիկ բա՞ն է լինելու, հա՞։

Լավ էր, որ այդ պահին ներս մտավ Վահանը, և տղաները դադարեցին հարցեր տալուց։

— Ա՛յ թե մտածել եք, հա՛։ Իսկ ես քիչ էր մնում խո դառնայի,— ասաց նա և մոտեցավ կրակին։

Վահանը տղաներին պատմեց մեր որոշումը, իսկ նրանք ուրախությունից սկսեցին «ուռա» բղավել։ Մուկուչը, որին կատակով «Տորք Անգեղ» էինք կանչում, երկու ձեռքով գրկեց Վահանին և մի քանի անգամ վեր բարձրացրեց։ Իսկ Սարգիսն ու Վարդգեսը ուրախությունից արջի նման գլխկոնձի էին տալիս ու բացագանչում.

— Ա՜խ, թե գործ կանենք, հա՜։

Միայն Գևուշն էր, որ ձեռքը հուսահատորեն թափ տվեց օդում և մրթմրթաց քթի տակ.

— Ի՜հ, դա իսկի էլ խելքի մոտիկ բան չէ։

— Դու միշտ էլ այդպես ես. սկզբում ոչ մի բանի չես հավատում, բայց հենց սկսում ենք, ուրախությունից գլուխդ կորցնում ես,— ասաց տղաներից մեկը։

Մենք որոշեցինք ջրաղացը մեր շտաբը դարձնել։ Հարկավոր էր միայն վերանորոգել տեղ-տեղ փլված կտուրը։

Տղաների առաջարկությամբ ղեկավար նշանակվեց Վահանը, և այդպիսով էլ մեր «խորհրդակցությունը» վերջացավ։

## ՈՎՔԵ՞Ր ԵՆ ՍԱՌՑԱՊԱՏՈՒՄ ՃԱՆԱՊԱՐՀԸ

Մենք դուրս եկանք ջրաղացից։ Արդեն մթնել էր։ Դեռ նոր էինք կոլտնտեսության այգիներից դեպի գյուղ տանող ճանապարհը թեքվել, երբ հանկարծ մի խուլ ճիչ լսելով, կանգ առանք։ Դըպրոցի դիմացի ճամփի վրա ընկել էր մեկը և ծանր տնքում էր։ Վազեցինք առաջ։ Պարզվեց, որ Սուսամբար մայրիկն է։ Նա եկել էր դպրոցի բակից ջուր տանելու, բայց որովհետև ճանապարհը ամբողջովին պատած էր սառույցով՝ սայթաքել էր ու ջրով լի դույլերը ձեռքին՝ վայր էր ընկել։ Մենք օգնեցինք նրան վեր կենալու։

— Ո՜ւֆ, ոտքս ջարդվեց, ամա՜ն,— ծանր տընքաց Սուսամբար մայրիկը։— Այ դրանց արևը չմեռնի, հա՜, ճամփեն սատանի երես են դարձրել։ Երեկ եկան աղբյուրի ջուրը կապեցին ճամփի վրա, ինչքան թքեցի, մրեցի, էլի վեջները չեղավ։ Վերջը իրենց արածը արին…



— Այդ ովքե՞ր, Սուսամբար մայրիկ, ովքե՞ր,— հետաքրքրված հարցրեց Վահանը։

— Ես գիտեմ, դրանք Ենոք բիձի թոռներն են՝ Արշակն ու Վաղարշակը։ Նրանք են ամեն օր ջուր լցնում այս ճամփի վրա,— ասաց Գևուշը։

Նա պատմեց, թե ինչպես երեկ առավոտյան աշակերտներից մի քանիսը դպրոց գնալիս հերթով գրմփացել են սառույցի վրա։ Իսկ այդ ժամանակ Արշակն ու Վաղարշակը հեռվում կանգնած հռհռացել են։

Սուսամբար մայրիկը դպրոցից այնքան էլ հեռու չէր ապրում։ Մենք դատարկ դույլերը նորից լցրեցինք ջրով և տարանք նրանց տուն։ Ետ դառնալիս Վահանն ասաց.

— Սա էսպես թողնել չի կարելի, տղերք...

— Բռնենք էդ լպստվածներին ու մի լավ դընքսենք,— վրդովված ասաց Մուկուչը։

— Չէ, ծեծելով ոչինչ դուրս չի գա, ավելի լավ է մի ուրիշ բան մտածել,— պատասխանեց Վահանը։

— Եկեք մոխիր շաղ տանք,— առաջարկեցի։

— Իսկ եթե նրանք նորից կրկնե՞ն,— հարցրեց Արամը։

— Դե, այն ժամանակ ուրիշ...

Ինչպես որոշեցինք, այնպես էլ արինք։ Դպրոցի բակում վառված ածուխի մի մեծ կույտ կար։ Մի քանի հնացած դույլեր ճարեցինք և սկսեցինք տեղափոխել ածխափոշին։ Քիչ հետո ճանապարհի սառցապատած մասը ծածկվեց մոխրի հաստ շերտով։

Մյուս օրը նրանք նորից սառցապատեցին ճանապարհը։

— Բա լավ չէ՞ր լինի, որ դրանց ծեծեինք,— իր սովորության համաձայն ասաց Մուկուչը...

Իսկ Վազգենն առաջարկեց.

— Եկեք մի էնպիսի բան անենք....

. . . . . . . . . . . . .

Երեկոյան մենք դարան մտանք դպրոցի մոտ և սպասեցինք նրանց։ Չգիտեմ որքան ժամանակ էր անցել, երբ հանկարծ Արամը շշնջաց.

— Տղանե՛ր, գալիս են։

Հեռվից երևացին Արշակն ու Վաղարշակը։ Նրանք մոտեցան դպրոցի բակում գտնվող աղբյուրին։ Արշակը ձեռքի ափով սեղմեց ջրախողովակի ծայրը և ջուրը ցնցուղի նման շաղ տվեց ճանապարհին։ Այդ միջոցին մենք աննկատ դուրս եկանք թաքստոցից և նետվեցինք նրանց վրա։ Շորով արագ կապեցինք նրանց աչքերն ու ձեռքերը, իսկ Մուկուչը ձայնը կեղծելով ասաց.

— Եթե դուք մյուս անգամ փորձեք սառցապատել այս ճանապարհը, մենք ձեզ հետ դատաստան կտեսնենք, այնպիսի դատաստան, որի նմանը աշխարհիս ոչ մի հանցագործ դեռ չի տեսել։

Ես քիչ մնաց փռթկայի, բայց այդ պահին Վահանը ձեռքով փակեց բերանս։ Հենց այդպես էլ նրանց աչքերն ու ձեռքերը կապած քարշ տվեցինք իրենց բակի մոտ ու դարբասը բացելով, հրեցինք ներս։

## ԱՆՀԱՅՏ ՄԱՐԴԻԿ

Հաջորդ օրը առավոտյան ես սովորականից շուտ արթնացա։ Դեռ դասի գնալու շատ ժամանակ կար։ Մայրս շարունակ նախատում է ինձ, որ ես ծույլ և անփույթ տղա եմ։ Ամբողջ օրը աննպատակ թափառում եմ դրսում ու ոչ մի բանով չեմ ուզում օգնած լինել իրեն։ Ահա և հարմար առիթը եկել էր։ Նա այդ օրը լվացք էր անելու, իսկ ջուր տաքացնելու համար բավականին փայտ էր հարկավոր։ Ես շտապ հագնվեցի, վերցրի կացինը ու բակ դուրս եկա։ Ամբողջ գիշեր ձյունը եկել ու հաստ շերտով ծածկել էր տանիք ու բակ։ Ծառերի բարալիկ ճյուղերը ձյան ծանրությունից այնպես էին կռացել, որ արդեն գետին

էին քսվում։ Ամենքը վաղ արթնացել, մաքրում էին իրենց տանիքները։

Այդ տեսնելով ես նույնպես ցանկացա վերցնել փայտե թիակը և տանիք բարձրանալ, բայց...

Իմ բնավորության մեջ մի շատ վատ բան կա, որի համար մերոնք միշտ էլ հանդիմանում են ինձ։ Դա այն է, որ ես ոչ մի գործ լրիվ չեմ ավարտում։ Մեկը չսկսած անցնում եմ մյուսին։ Չգիտեմ՝ երբևէ կկարողանա՞մ վերացնել իմ բնավորությունից այդ բանը, թե՝ ոչ, բայց վերացնել անպատճառ հարկավոր է։

Այս մտքերով տարված դեռ նոր էի մի քանի կտոր փայտ կտրել, երբ հանկարծ մեր բակի դուռը շրխկոցով կրնկի վրա բացվեց և շնչակտուր բակ ընկավ Վարդգեսը։

— Դու այստեղ փայտ ես ջարդում, իսկ այնտեղ... դպրոցում... Ա՜յ թե բան է կատարվում, հա՜...— ծիծաղից խեղդվելով ասաց նա և սկսեց թավալվել ձյան վրա։ Ես բոլորովին չգուշակելով նրա ծիծաղի պատճառը, շվար կանգնել էի։

— Ախր ի՞նչ է եղել, որ այդպես ծիծաղում ես, — հարցնում եմ ես, իսկ Վարդգեսը քրքջում է։ Վերջապես նա զսպեց իրեն և ասաց.

— Գնանք, գնանք դպրոց և դու ամեն ինչ կիմանաս։

— Որ այդպես է, սպասիր, հիմա գալիս եմ,— պատասխանեցի ես և շտապով տուն մտա։ Արագ հագա վերարկուս, վերցրի պայուսակս և փայտերն այդպես էլ թողնելով բակում, Վարդգեսի հետ շտապեցի դպրոց։ Միջանցքի ծայրին տեսանք մի խումբ աշակերտների, որոնք շրջապատել էին Արշակին և Վաղարշակին ու, հարցեր էր, որ կարկուտի նման թափվում էին նրանց վրա։ Ես անմիջապես հասկացա ողջ եղելությունը, արմունկով թեթևակի հրեցի Վարդգեսին, իսկ նա ծիծաղը զսպելու համար ատամներով սեղմեց շրթունքները։ Մենք մոտեցանք։

— Ասում եք սև շորով կապեցին ձեր աչքերը, հա՞,— հարցրեց մեկը։

— Բա դուք չտեսա՞ք ովքեր էին,— հետաքրքրվեց երկրորդը։

— Սպասեք, տղերք, վրա մի տվեք, թողեք մարդ բան հասկանա,— ավելացրեց մի ուրիշը։

Քիչ հետո Վահանն ու մեր խմբի մյուս անդամներն էլ եկան։ Եվ այսպես, ամեն մի եկողի համար Արշակն ու Վաղարշակը սկսում էին միևնույն պատմությունը՝ ամեն անգամ մի նոր բան ավելացնելով։

— Դրանք անհայտ մարդիկ են, տղերք, ինչպես որ բավական է մարդ մի սխալ բան անի, խակույն կգտնեն ու մի օյին կխաղան գլխին։— Վաղարշակը եղբոր ասածը հաստատելու համար ավելացրեց.

— Հա՛, հա՛, դրանք ամեն ինչ կարող են անել, մինչև անգամ կարող են մարդ սպանել։

Այստեղ մեր տղաները չկարողացան իրենց ծիծաղը զսպել և բարձրաձայն քրքջացին։

— Ծիծաղե՞ք, ծիծաղե՞ք. այդ բանը մի օր էլ ձեզ կպատահի,— վրդովված ասացին Արշակն ու Վաղարշակը և հեռացան։

(Շարունակելի)

# ՄԱՅԻՍ

Վ. ԿԱՐԵՆՑ

Իմ հայրենի կանաչ գարուն,
Դու նոր ուժով եկար,
Քո թովչանքն է երգում առուն
Ուրախ՝ դաշտերն ընկած։
Ծլած փարթամ արտերի մեջ
Կակաչներդ ալվան,
Ծածանում են փառքդ անշեջ՝
Դրոշների նման։
Արտույտներն են երգում՝ արբած
Ակոսների բույրով,
Բարդիներն են վերև ձգված՝
Կանգնել հպարտ հեզով։
Ու դու ժպտում ես ամենուր,
Փողոցներով անցնում,
Հազար նմայք ու հազար բույր
Մեր սրտերը լցնում։
Քո հաղթության համար այսօր,
Այս երեկո կապույտ,
Հրանոթներն են բյուրավոր
Տալիս ուրախ սալյուտ։




*Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ*

Իմ փոքրիկներ՝ Ներսի՛կ, Վարսի՛կ,
Խորե՛ն, Սուրե՛ն, Սարի՛կ, Թարի՛կ,
Եվ դու՝ Արփի՛կ, Քրիստափո՛ր,
Ձեզ շատ սիրող Ղարիբ ապոր
Հրավերով
Ու պատվերով
Թիթեռնիկի պես հագեք,
Թռեք, արագ մոտս եկեք,
Մի պահ թողեք ծիծաղ ու կանչ,
Սրեք, լարեք, ուշք ու ականջ,
Լուռ սպասեք
Եվ ինձ լսեք:
Չեմ կանչել ձեզ բան կարդալու,
Այլ մի անկեղծ խորհուրդ տալու,
Խորհուրդ, որ շատ բանից վեր է,
Հավերժական մի նվեր է:
Դե, ո՞նց խոսքով սիրտս բանամ,
Գուցե ձեզնից, ի՞նչ իմանամ,
Ոմանք անցած քառորդներում
Հանգիստ նստած տաք տներում
Գիրք չեն բերել,
Դաս չեն սերտել,
Կամ թե ոմանք խաղով տարված
Չեն աշխատել այնպես լարված,
Դրսում ազատ «քեֆ» են քաշել,
Ժամանակն են զուր տեղ մաշել,—
Ջան են պահել՝
«Երեք» շահել:
Այդպեսներին, վատ է, վատ է,
Մի ծուռ «երկուսն» անգամ շատ է.
Ով զոռով է «երեք» ճարում,
Կյանքում թանկ է նա վճարում...
Հիմա լսեք ինչ եմ ասում՝
Գլուխ պահել է՛լ չի սազում.
Ժամանակը կարճանում է,
Ուսման տարին վերջանում է,
Եկե՛ք, լցված խանդով, ուժով,
Նոր եռանդով, նոր աշխուժով:
«Երեքը» ձեզ թև կամ ուժ չէ,
Զգաստացեք, քանի ուշ չէ,
Թողեք խաղերն
Ու երգերը,
Առաջ քաշեք
Ձեր գրքերը...
Ականջներիդ բուրդը հանեք,
Ձեր բախտի հետ կատակ չանեք,
Քննություն է ահա գալու,
Դուք հաշիվ եք շուտով տալու:
Պատվիրում եմ ձեզ մի առ մի,
Այսօրվանից ո՛չ մի, ո՛չ մի
«Երկուս», «երեք»
Տուն չբերեք:
Ինչ ասացի՝ լա՛վ իմացեք,
Դե՛, ձեզ տեսնեմ, գործի անցեք:



# ՀԵՏՈ

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

1

Թե ո՞ր դպրոցումն է սովորում Արտոն՝ ես ձեզ չեմ ասի։ Երբ հեքիաթս ավարտեմ, դուք ինքներդ այդ կասեք։ Բայց սա իսկի էլ հեքիաթ չէ, այլ իրական պատմություն... Ասենք՝ դուք հեքիաթ շատ եք սիրում, ես էլ հեքիաթի նման կպատմեմ։

Լինում է, չի լինում, մի տղա է լինում, անունը՝ Արտո։ Ծնողներն ասում էին.

— Մեր Արտոն շատ ընդունակ է։

Հարևաններն ասում էին.

— Շատ ընդունակ տղա է Արտոն։

Ուսուցիչներն էլ էին ասում.

— Արտոն ընդունակ է։

Եվ իրոք՝ Արտոն ընդունակ էր։ Ինչ դաս ուզում է լիներ, հենց որ երկու անգամ ուշադիր կարդար՝ հաջորդ օրը «հինգի» կպատասխաներ։

Ընկերներն էլ էին սիրում նրան։ Բոլոր խաղերում նա առաջինն էր, ամենից ճարպիկը, իսկ ֆուտբոլում հավասարը չուներ։ Նա բակի ֆուտբոլի թիմի պարծանքն էր՝ կենտրոնական հարձակվողը։ Դռնապան քեռի Հովսեփից սկսած մինչև ամենափոքրիկ տղան՝ Պետիկը, նրա «բոլելշչիկներն» էին։ Ինչպե՛ս էր խաղում, ինչպե՜ս...



2.

Լինում է, չի լինում, մի տղա է լինում, անունն Արտո... Չէ՛, դուք այդ արդեն գիտեք... Լինում է, չի լինում, մի բառ է լինում։ Այդ բառն այսպես է



գրվում՝ «հ ե տ ո» և ինչպես գրվում, այնպես էլ արտասանվում է՝ «հետո»։

Թե ինչպե՞ս, ե՞րբ մեր հերոսը սովորեց «հետո», ես չգիտեմ, բայց այս տարվա սկզբից նա սկսեց ավելի հաճախ կրկնել այդ բառը։ Գուցե նա չորրորդ դասարանի իր այս տարվա դասագրքե՞րում է կարդացել «հետո»։ Բայց դա ի՞նչ կարևոր է։ Քի՞չ բառեր կան, որ մենք էլ գիտենք, բայց չենք գործածում, կամ քիչ ենք գործածում, միայն անհրաժեշտության դեպքում։

Բայց Արտոն այդպես չէր։ Մայրը պատշգամբից ձայն էր տալիս ֆուտբոլով տարված Արտոյին.

— Դասերդ մնացին, Արտո՜...

— Հետո,— արագ պատասխանում էր նա և խփում մոտեցող գնդակին։ Գնդակն անցնում էր դարպասից, ու բակում բոլորը ծափահարում էին։ Արտոն սրբում էր ճակատի քրտինքը և մոտենա-

լով դաշտի կենտրոնին, ձայն էր տալիս մորը.

— Մա՛, դու ներս գնա, ես հետո, հետո կպարապեմ։

— Է՜, թող խաղա, Վարդիշա՛ղ ջան,— միջամտում էր հարևանուհին,— դու ի՞նչ մտածելու բան ունես, քո Արտոն ընդունակ է, նրա համար ի՞նչ կա։ Ա՛յ, իմ Համիկը նստած ճգնում է։

Իսկ Համիկը նույնպես թիմի անվանի խաղացողներից էր՝ դարպասապահը։ Եվ ահա նստած դասերն էր պարապում, թեև բակից լսվում էին ֆուտբոլիստների կանչերը։ Նա էլ «հետո» բառը գիտեր, բայց երբ խոսքը դասերին էր վերաբերում՝ երբեք չէր գործածում այն։

Այսպես, աշունն անցավ, եկավ ձմեռը։ Արտոն և՛ սղղալ էր սիրում, և՛ ձնե մարդ շինել։ Դե ո՞վ ձյուն չի սիրում։ Եվ ահա նորից նա խաղում էր. խաղում էր առավոտից իրիկուն։ Մայրը դարձյալ իր սովորության համաձայն դուրս էր գալիս պատշգամբ ու կանչում.

— Արտո՛, դասերդ մնացին, Արտո՜...

— Հետո, մայրի՛կ, հետո։

— Ա՜խ, քո էդ «հետոն»,— թևերը թափահարելով ներս էր մտնում մայրիկը։

Իսկ գարնա՞նը։ Դե ո՞վ կդիմանար գարնան հրապույրներին։ Արտոն նորից բակում էր։ Բայց մայրիկն այս անգամ շատ էր անհանգստանում։ Եվ ինչպե՞ս չանհանգստանար։ «Երկուսներն» սկսել էին ավելի շատ երևալ Արտոյի օրագրում։ Երբեմն Արտոն էլ էր մտածում այդ մասին, բայց ասում էր.

— Հետո կուղղեմ, դեռ ժամանակ շատ կա։

Իսկ մտքում ավելացնում էր. «Դե ես ընդունակ եմ, բավական է, որ մի երկու անգամ կարդամ»։ Ի՞նչ զարմանալու բան կա, չէ՞ որ Արտոն իրոք ընդունակ էր։

Եվ ահա մայիսի տոներից հետո Արտոն սկսեց ավելի քիչ դուրս գալ բակ, իսկ հաղթանակի օրվանից նա այլևս բակ դուրս չեկավ։ Ճիշտ է, այնքան էլ հեշտ բան չէր, բայց Արտոն կարողացավ այդ անել։ Չէ՞ նույն դասարանում չէ՞ր մնա։ Նա նստեց ու սկսեց պարապել։ Բայց նախքան պարապելը թերթեց դասագրքերը։ «Որ դասը որ չգիտեմ, այն էլ կկարդամ» մտածեց նա։ Եվ հիմա միայն Արտոն նկատեց, որ շատ բան չգիտի։ «Ո՞նց պիտի հասցնեմ»,— սարսափեց նա, բայց ինքն իրեն հույս տալով, սկսեց պարապել։

Կարդում էր, կարդում՝ գիշեր-ցերեկ։

— Արտ՛ո, բավական է, արի ճաշ կեր,— ձայն էր տալիս մայրը։

— Հետո՛, հետո՛։



— Ախր սոված ես։

— Հետո, մա՛, հետո կուտեմ։

«Այսքան էլ պարապե՞լ կլինի,— մտածում էր մայրիկը։— Հարկավոր է սնունդն ուժեղացնել, թե չէ կհիվանդանա»։ Եվ մայրիկը Արտոյի համար կարագ ու մեղր առավ։ Նա կարագով հացը դնում



էր Արտոյի կողքին, բայց դա տղան ախորժակ էլ չուներ։ Էլ ախորժա՞կ կմնար։ Մի քանի օր էր մնացել քննություններին. բայց Արտոն խրվել էր մինչև կոկորդը։ Այնքան դաս կար, այնքա՜ն դաս կար սովորելու... Իսկ չէ՞ որ պետք էր իմացածն էլ կրկնել...

3.

Կար, չկար, մի տղա կար՝ Արտո անունով... Դուք արդեն նրան գիտեք։ Չգիտեք միայն, թե հետո ի՞նչ եղավ։ Իսկ հետո այսպես եղավ։

Քննությունները վերջացել էին։ Բոլորը հերթով մոտենում էին դասարանի ղեկավարին և ստանում

փոխադրական վկայականները։ Համիկն ստացավ իր թերթիկը և ուրախ-ուրախ գնաց տուն։ Արտոն էլ մոտեցավ, որ իր թերթիկն ստանա։

— Հետո,— ասաց դասարանի ղեկավարը։

Ինչպե՞ս թե հետո, զարմացավ Արտոն, բայց նրան բացատրեցին, որ երբ աշնանը թվաբանության վերաքննությունը տա, այն ժամանակ էլ թերթիկը կստանա։

Արտոն շատ էր սիրում «հետո» բառը, բայց այդ վերջին «հետոն», որ ասաց դասարանի ղեկավարը, նա դեռ շատ երկար կհիշի։

Իսկ հիմա, երեխաներ, ասեք, թե ո՞ր դպրոցում է Արտոն սովորում։ Էլի՞ չգիտեք։ Չէ՛, գիտեք, ձեր դպրոցում է նա սովորում։

Չե՞ք հավատում։ Ախր ես անունը փոխել եմ, հիմա հասկացա՞ք... Ապրե՛ք, ես այդպես էլ գիտեի։

# ՓՈՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ ԸՆԴԱՌԱՋ

Վ. ՏԱԼՅԱՆ

Լուսանկար՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

Դպրոցի ծառազարդ բակում հավաքվել էին արդեն քննություն տված աշակերտները. խոսում էին սովորականից ավելի բարձր ձայնով, հրմշտում իրար, ծիծաղում։ Մեկը մյուսին ընդհատելով պատմում էին, թե ինչ տոմս ընկավ, ինչպես դուրս եկավ ծանր վիճակից, ինչքան ժամանակին հիշեց անցածը, այն էլ էքսկուրսիայի օգնեց...

— Է՜, մի մազաչափ էլ որ սխալվեի, այլևս ինձ կենդանի չէիք տեսնի,— միանգամայն լուրջ թախծեց տղաներից մեկը։

Աղջիկները կչկչացին։ Նրանցից մեկն ասաց.

— Ինչո՞ւ, ի՞նչ պիտի լիներ որ...

«Մեռնելուց պրծած» տղան ողբալի տոնով պատասխանեց.

— Սև ծովում պիտի խեղդվեի... Քիչ էր մնում Օդեսան հարավային ափին ցույց տայի...

Քննական սենյակում «մարտնչող» իրենց ընկերոջ համար միջանցքում տառապում էին երկու աշակերտ։ Նրանք հերթով մոտենում էին դռանը և բանալու անցքից դիտում ներսի «մարտադաշտը»...

Ես գիտեմ, որ նման տեսարան կլինի շատ ու շատ դպրոցներում, երբ սկսվեն քննությունները։ Այդպես կլինի նաև Շահումյանի շրջկենտրոնի երկրորդ դպրոցում, որի աշակերտները հիմա փորձնական «հրաձգություն» են կատարում, գրքերն են ամրապնդում՝ կրկնում են... Դասարանների մեծ մասում կրկնությունները թափով սկըսվեցին ապրիլի մեկից։

Արևը դեռ չէր բարձրացել դպրոցի թիկունքում կանգնած բլրի ուսից, երբ հողամասը լցվեց կանչերով ու բահերի զնգոցով։ Երեխաները եկել էին հողամասում աշխատելու։ Այստեղ էին նաև բնագիտության դասատուները՝ Հովսեփյանն ու Գասպարյանը։ Նրանք բուսաբանության դասընթացը կաբինետում ու դասարանում կրկնելու հետ միասին, գործնական աշխատանքով ամրապնդում էին աշակերտների գիտելիքները։

Վեցերորդ «ա» դասարանի աշակերտուհի Ռոզա Մելքոնյանը դպրոցի հողամասում աճեցրած բույսերի հերբարիում է կազմել. իսկ Կրիզո Մանուկյանը խնամքով նկարել է տարբեր բույսերի գունավոր նկարները։ Վեցերորդ «բ» դասարանի աշակերտ Գուրգեն Մանուկյանը սիրում է թռչուններ ու ճագարներ պահել։ Նրա ճագարներից մեկը ժամանակին հերձել են և ուսումնասիրել։

Մայիսյան կիրակի առավոտ է։ Բայց այս ի՞նչ աղմուկ է դպրոցում, ի՞նչ իրարանցում։ Թեթև հագնված, ճանապարհորդական պարկերն ուսերին գցած, վզկապները փողփողացնելով դես ու դեն են վազում երեխաները։ Նրանցից ոմանք մտնում են դպրոց և դուրս գալիս, կանչում իրար, շտապեցնում։ Դպրոցի դիմաց, խճուղու վրա կանգնած երեք ավտոբուսները ազդանշան են տալիս, հնդում...

— Շո՛ւտ արեք, շո՛ւտ արեք, ուշացանք,— լսվում է աշխարհագրության դասատու Աշոտ Մկրտչյանի ձայնը։

Այդ ավտոները, որ վեցերորդ և յոթերորդ դասարանների աշակերտներին այսօր տանում են Սևան և Դիլիջան, դպրոցը նվեր է ստացել պոլիտեխնիկ կրթությունը լավ կազմակերպելու համար։ Տարվա ընթացքում աշակերտներն արհեստանոցում քանդել են մեքենաները, ուսումնասիրել, իսկ հիմա գնում են հեռավոր ճանապարհ։ Սակայն չկարծեք, թե նրանք զբոսանքի են գնում։ Դա հինգերորդ էքսկուրսիան է։ Այդ էքսկուրսիաների ընթացքում նրանք ավելի լավ են յուրացրել աշխարհագրությունից անցածը։

Այդ մեքենաներով չորրորդ և հինգերորդ դա-

սարանների աշակերտները գնացել էին կենդանաբանական ու բուսաբանական այգիները, հախճապակու գործարան, իսկ իններորդ և տասներորդ դասարանցիները՝ աստղադիտարան և շատ ուրիշ տեղեր։

Ահա փակվեցին ավտոբուսների դռները։ Մեքենաները կապտավուն ծուխ արձակելով սլացան առաջ։ Նրանց բաց լուսամուտներից հնչեց երգն ու ծիծաղը։

Քննությունններից շատ առաջ վեցերորդ դասարանի մի խումբ աշակերտներ հաճախ գալիս էին պիոներական սենյակ, դուռը ներսից փակում և ինչ-որ գործ էին անում։

— Տեսնես ի՞նչ են շինում,— աշխատելով պարզել նրանց գաղտնիքը, լուսամուտից ներս նայելով փսփսում էին «հետախույզները»։

— Այդ ի՞նչ եք հետախուզում, երեխաներ,— հանկարծ նրանց թիկունքում հնչում էր դպրոցի դիրեկտոր Բաբկեն Հարությունյանի ձայնը։

Երեխաները շտապ ցրվում էին։

Մի օր էլ, երբ աշակերտները դասարան մտան, տեսան, որ ուսուցչի սեղանին դրված է ինչ-որ մակետ։ Դա Դարյալի կիրճի մակետն էր։

— Վա՛յ, ինչ լա՜վն է,— բացականչեց առաջին ներս մտնողը։

— Ոնց որ իսկական լինի,— զարմանում էր մյուսը։

Ապա մոտենում էին ու կարդում այդ մակետը պատրաստողների անունները։ Իսկ Ա. Եղիազարյանը, Բ. Պետրոսյանը, Ա. Դոդոխյանը, Է. Յադուրյանը, Մ. Քրաջյանը քթների տակ ժպտալով միմյանց ասում էին.

— Բա որ Սև ծովի մակետը պատրաստենք...

Եվ պատրաստեցին։

Մակետում կան ոչ միայն ծովափնյա քաղաքները, նավահանգիստները, կուրորտները, այլև բուսական բնորոշ գոտիները։

Կանցնի մի քանի օր, և այդ մակետը նույնպես քննության ժամանակ կօգնի երեխաներին։

Յոթերորդ «ա» դասարանի աշակերտ դրուժինայի խորհրդի նախագահ Ռաֆիկ Հակոբյանը Կ. Ասլանյանի, Գ. Գեղամյանի և Մ. Քոբեկյանի հետ մի խմբակ է կազմել։ Նրանք կրկնում են հատուկ ռեժիմի համաձայն։ Որոշել են ժամերը, կարգավորել ընդմիջումները։

Հետաքրքիր մի գործ են կատարել դպրոցում նաև պատմության գծով։ Ուսուցիչ Մելիքյանի ղեկավարությամբ, աշակերտները պատրաստել են Հայաստանի պատմության թեմայով մի բեմադրություն սկսած հայ ժողովրդի կազմավորումից մինչև մեր օրերը։ Բեմական պատկերներին միահյուսվում են երգեր, արտասանություններ։ Դրանց հետևում է գունավոր նկարների ցուցադրումը էպիդիասկոպով։

Աշակերտները դիտում են այս պատկերները և վերհիշում անցածը։ Չեն մոռանա նրանք այդ բոլորը նաև քննությունների ժամանակ։

Դրուժինայի պատի թերթը «Խաղաղություն» է կոչվում. բայց այսօր նա քննադատում է տուման մեջ ետ մնացողներին, կրկնություններին մատների արանքով նայողներին։ «Քննությունները հեռու չեն» վերնագրի տակ զետեղված են նյութեր, որ գրել են ուսուցիչները, ջոկատավարները, պիոներները։

Հանկարծ միջանցքի ծայրում լսվում է ծիծաղ։ Ծիծաղում են «Ասեղ» երգիծական թերթի ընթերցողները։

Սրամիտ ծաղրանկարներ են զետեղված այդ թերթում։ Ահա պատանի նկարիչը պատկերել է մեկին, որն ամբողջ տարին քնած է եղել, իսկ հիմա քննադատության ասեղը ծակել է նրան և նա վեր է թռել ու զարմացել, որ արդեն մայիս ամիսն է։

Այս օրերին լույս են տեսել նաև ջոկատային պատի թերթերը։

Այսպես է նախապատրաստվում մոտալուտ քննություններին Շահումյանի երկրորդ դպրոցի ամբողջ կոլեկտիվը։

Կանցնի մի քանի օր, և կոկիկ ու մաքուր հագնված աղջիկ ու



*տղա սրտի թրթիռով կմոտենան բնական սեղան-ներին, կվերցնեն հարցատոմսերը և կպատմեն գի-տության հրաշալիքների մասին, համարձակորեն կճանապարհորդեն ծովերով ու լեռնաշղթաներով, սառցադաշտերով ու մթամած տայգաներով:*



## ՎԱՐԴԱԳՈՒՅՆ ՀԵՂՈՒԿՈՎ

# ՍՐՎԱԿԸ

*(Գիտա-ֆանտաստիկական պատմվածք)*

*ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ*

*Նկ. Մ. ԱՌՍՈՅԱՆԻ*

Հովիկը դպրոցից վատ տրամադրությամբ տուն վերադարձավ:

Բանն այն է, որ նա բոլորովին չէր փայլում իր գնահատականներով: Արդեն սովորական դարձած «երեքների» արանքներում, երբեմն նաև «երկու-ներ» էին հայտնվում:

Հովիկն իր ձախորդությունների պատճառը հա-մարում էր ժամանակ չունենալը: Մինչև դպրոցից տուն էր վերադառնում, նախաճաշում, հանգստա-նում... օրն արդեն անցնում էր: Իսկ դասերը մնում էին:

Ամենից անախորժն այն էր, որ յուրաքանչյուր վատ գնահատականին հաջորդում էին մայրիկի և տատիկի հանդիմանությունները:

Այսօր տատիկը անմիջապես զգաց, թե ինչու է Հովիկի տրամադրությունը ընկել: Խոհանոցից լսվեց նրա դժգոհ քրթմնջոցը: «Սկսվեց»,— մտքում ասաց Հովիկն ու գլխացավը պատճառաբանելով, դուրս եկավ «քարմանալու»:

Նա ինքնաբերաբար մոտեցավ հարևան բնա-կարանի դռանը:

«Պրոֆեսոր Ա. Ե. Գ Ա Լ Ի Մ Ո Ն»,

կարդաց մակագրությունը և սեղմեց զանգի կո-ճակը:

Դուռը բացեց ինքը՝ Ալեքսանդր Եվգենևիչը: Հո-վիկը բարևեց ու ներս մտավ:

Նա վաղուց էր մտերմացել յոթանասունամյա պրոֆեսորի հետ: Նրանք հիանալի ընկերություն էին անում և, չնայած տարիքների հսկայական տարբերությանը, կարողանում էին շատ լավ հաս-կանալ իրար:

Պրոֆեսորը Հովիկին իր կյանքից հետաքրքիր դեպքեր էր պատմում, ծանոթացնում էր բժշկու-թյան հիմունքների հետ. երբեմն էլ երկուսով գնում էին կինո կամ կրկես...

— Ալեքսա՛նդր Եվգենևիչ,— առանց նախաբա-նի ասաց Հովիկը,— դուք պետք է ինձ օգնեք: Ես չեմ հասցնում դասերը պատրաստել... Հասկա-նո՞ւմ եք: Ուղղակի ժամանակ չկա...

— Հապա, նստիր, Հովի՛կ,— ժպտալով ասաց Ալեքսանդր Եվգենևիչը:— Ժամանա՞կ չունես,— տարօրինակ է: Իսկ ինչպե՞ս են քո ընկերները հասցնում:

Հովիկը ուսերը վեր քաշեց.

— Չգիտեմ:

— Դու, պարզապես, ժամերդ օգտագործել չը-գիտես,— շարունակեց պրոֆեսորը,— ի՞նչ է, կար-ծում ես, երբ օրը երկու անգամ երկար լիներ, դու ամեն ինչ կհասցնեի՞ր...

— Իհարկե, եթե այդպիսի մի հնար լինե՜ր...

Հովիկը աղերսական հայացքով նայեց պրոֆե-սորին:

Ալեքսանդր Եվգենևիչի կապույտ աչքերը մեղմ ժպտում էին ակնոցի հաստ ապակիների տակից: Պրոֆեսորը հագել էր պիժամը: Նա սովորություն ուներ գլխին սրբիչ կապելու, որովհետև վախենում էր հարբուխից: Նա սրբիչը կապում էր չալմայի պես և նմանվում կրկեսի ֆոկուսնիկներին:

— Հը՛մ, քեզ իսկապես որ պետք է օգնել,— մրմնջաց պրոֆեսորը,— հապա գնանք լաբորատորիա:

Ալեքսանդր Եվգենևիչի լաբորատորիան գտնըվում էր բակի կողմը նայող հսկայական սենյակում: Լաբորատորիայի կեսը զբաղեցնում էին մարդկային մարմնի զանազան մասեր, գիպսից պատրաստած մոդելներ և պատի ամբողջ երկարությամբ կանգնած գրապահոցը, որը լիքն էր բժշկության վերաբերյալ շատ գրքերով: Մնացած տարածությունը զբաղեցնում էին լաբորատոր սեղանները, որոնց վրա գտնվում էր ապակե խողովակների ու փորձանոթների մի ամբողջ զանգված:

— Նստիր,— առաջարկեց պրոֆեսոր Գալիմոնը, ցույց տալով բազմոցը:

Հովիկը նստեց: Նա հուզված հետևում էր պրոֆեսորի շարժումներին. սիրտն անհանգստությամբ թռչկոտում էր կրծքի տակ: Մի՞թե Ալեքսանդր Եվգենևիչը իրոք կարող է օգնել իրեն:

Պրոֆեսորը մոտեցավ ապակեպատ պահարանին և վերի դարակից վերցրեց մի քիմիական բաժակ:

Բաժակը լի էր բաց-վարդագույն հեղուկով, որն արձակում էր սպիտակ պղպջակներ ու դրանով էլ հիշեցնում հանքային ջուրը:

Ալեքսանդր Եվգենևիչը սեղանի վրայից վերցրեց մի սրվակ և հեղուկը զգուշությամբ լցրեց նրա մեջ: Հետո սրվակը խցանով ամուր փակեց ու նայեց Հովիկին:

Հովիկը նստել էր լուռ և վախենում էր նույնիսկ շնչել:

Մի՞թե պրոֆեսորը կատակում է: Թե՞ ուզում է ինչ-որ շատ հետաքրքիր ֆոկուս անել:

Ալեքսանդր Եվգենևիչը առանց կախարդական ձողիկի և հանելուկային ու խորհրդավոր շարժումների, սրվակը մեկնեց Հովիկին ու ասաց.

— Ահա իմ օգնությունը: Վերցրո՛ւ: Կխմես վաղն առավոտյան, թեյից առաջ: Այս հեղուկը քո օրը կերկարացնի երկու անգամ: Ես այսօր մեկնելու եմ Պրագա, բժիշկների միջազգային կոնֆերանսին: Անպայման նամակ կգրեմ և կպատմեմ վարդագույն հեղուկի գաղտնիքի մասին:

Հովիկը զարմացած նայում էր սրվակի մեջ պսպղացող հեղուկին: Անմիջապես խմելու ցանկությունը անչափ մեծ էր: Բայց Հովիկն աշխատեց հեռու վանել այդ միտքը:

— Դե, սիրելի՛ս,— ասաց պրոֆեսորը,— ես ստիպված եմ քեզ հրաժեշտ տալ:

Հովիկն ամուր-ամուր համբուրեց Ալեքսանդր Եվգենևիչին, հետո վերցրեց սրվակն ու դուրս վազեց: Հետևից հնչեց պրոֆեսորի ձայնը.

— Կխմես վաղն առավոտյան:

Ամբողջ օրը Հովիկը չկարողացավ կենտրոնանալ որևէ բանի վրա: Կարծում եք հե՞շտ է սպասել մի լրիվ օր, երբ ձեռքիդ տակ ունես այնպիսի հրաշագործ հեղուկ, որը կրկնակի երկարացնում է ժամանակը: Քանի-քանի անգամ նա որոշեց բացել խցանն ու մի ումպով դատարկել սրվակի պարունակությունը:

Նա ուզում էր անմիջապես ապացուցել բոլորին, որ ամեն ինչում մեղավոր է ժամանակը: Բայց մի շատ հեռու տեղից նրա ականջին էր հասնում պրոֆեսորի ձայնը. «Կխմես վաղն առավոտյան»:

Ամբողջ գիշերն անկողնում անհանգիստ շուռ ու մուռ գալուց հետո, Հովիկը քնեց լուսաբացից միայն երեք ժամ առաջ:

Առավոտյան նա վեր կացավ սովորականից



ուշ: Անմիջապես հագնվեց, շտապ-շտապ լվացվեց և մի ումպով խմեց վարդագույն հեղուկը:

Հովիկը կարծում էր, որ հիմա կկատարվի մի ինչ-որ սարսափելի փոփոխություն: Բայց ոչինչ էլ չպատահեց:

Սովորականի պես տատիկը կանչեց բժշկելու, իսկ ժամը ուղիղ ութին բոլորը տնից դուրս եկան. ամեն մեկը շտապեց իր գործին:

Ժամացույցի սլաքները երկու անգամ դանդաղ շարժվելու ոչ մի միտք չունեին: Ընդհակառակը, այսօր նրանք կարծես արագացրել էին իրենց ընթացքը, որի հետևանքով էլ Հովիկը առաջին դասից ուշացավ:



Մեր հերոսը միշտ էլ տնից դուրս էր գալիս ժամը ութին և դպրոց հասնում առանց ուշանալու:

Գուցե իսկապե՞ս ժամացույցը արագ էր աշխատում: Բայց քերևս Հովիկը ինքն էր դանդաղ քայլել, կարծելով, որ եթե ժամանակը կրկնապատկվել է, ապա շտապելու հարկ չկա: Ո՞վ գիտե...

Օրն էլ անցավ սովորականի պես: Մի խոսքով ժամանակի մեջ ոչ մի փոփոխություն տեղի չէր ունեցել:

Արդեն երեկոյան Հովիկը սկսեց կասկածել պրոֆեսորի տված հեղուկի վրա: Մի՞թե Ալեքսանդր Եվգենևիչը կատակել է: Հովիկը սկսեց անհանգստանալ:

... Տնեցիները վաղուց էին քնել, իսկ Հովիկի քունը չէր տանում: Նա որոշեց կարդալ: Գրապահարանից զգուշությամբ հանեց Դյումայի «Սև կակաչը» և խորասուզվեց ընթերցանության մեջ:

Ժամացույցը խփեց ժամը երկուսը, հետո՝ երեքը...

Դեռ լույսը չբացված նա գիրքը վերջացրեց: Բայց քնել չէր կարողանում: Պարապությունից սկսեց աչքի անցկացնել դասերը:

Երբ լռեցին ժամացույցի յոթ հարվածները, Հովիկը նոր միայն գլխի ընկավ, որ ամբողջ գիշերը անքուն է անցկացրել: Չնայած դրան, նա հոգնածություն չէր զգում:

Իսկ ժամանակը, ինչպես միշտ, հոսում էր իր հաստատուն հունով:

Հաջորդ օրն էլ անցավ սովորականի պես: Բայց երեկոյան, երբ Հովիկը փորձեց քնել, պարզվեց, որ քունը նորից չի տանում:

Տեսնելով, որ քնել չի հաջողվելու, կեսգիշերին նա վեր կացավ և որոշեց կարդալ: Բայց հարմար գիրք ձեռքի տակ չկար:

Միացրեց հեռուստատեսը: Հետո հիշեց, որ այդպիսի ուշ ժամերին հաղորդումներ չեն լինում: Տխրությամբ անջատեց այն ու նստեց գրասեղանի առաջ:

Մեր հերոսը սկսեց ձանձրանալ: Իսկապես, որքա՞ն ձանձրալի է, երբ տանը բոլորը քնել են, կարդալու ոչինչ չկա, և քունդ էլ չի տանում:

Հովիկը ձանձրույթից սկսեց փնչացնել: Ժամը չորսին մոտ նրա աչքով հանկարծ ընկավ աշխարհագրության դասագիրքը, որ դեռ ցերեկվանից բաց վիճակում ընկած էր սեղանի վրա: Նա հիշեց, որ դասն այնպես էլ չի սովորել:

Ուրախանալով, որ վերջապես զբաղմունք նարվեց, նստեց սեղանի առաջ ու ինքն էլ իրենից անհարմար զգալով, քնքշորեն շոյեց դասագիրքը...

Հաջորդ օրը աշխարհագրության դասը պատասխանեց գերազանցի:

Իսկ անքնությունը շարունակվում էր: Առաջինը տատիկը նկատեց, որ Հովիկը գիշերները անքուն է անցկացնում: Հետո այդ մասին իմացավ մայրիկն ու խիստ անհանգստացավ:

Հովիկին ձանձրույթը սկսեց հալածել: Ամբողջ գիշերվա ընթացքում նա ոչ միայն դասերն էր պատրաստում, այլև կարողանում էր անցածը կրկնել: Բայց ժամանակը այնպես դանդաղ էր անցնում, որ Հովիկը վանդակի մեջ ընկած սպիտակ արջի պես անգործությունից սկսում էր քայլել սենյակի մի անկյունից մյուսը:

Վեցերորդ օրը մայրիկը որոշեց որդուն տանել բժշկի մոտ:

Բժիշկը կարճահասակ, լիքը մարմնով, ճաղատ գլխով ու ծվածիր ակնոցներով մի մարդ էր: Նա քննեց հիվանդին, փողակրե լսափողով լսեց սրտի ու թոքերի աշխատանքը, շոշափեց կողոսկրները, նայեց աչքերի մեջ և եկավ այն եզրակացության, որ Հովիկը ոչ մի հիվանդությամբ էլ չի տառապում:

... Իսկ մեր հերոսն ամեն գիշեր, առանց դրժ-գոհելու անքնությունից, պատրաստում էր դասերը, հետո սկսում էր որևէ հետաքրքիր գիրք կարդալ: Բայց մի քանի ժամ անընդհատ կարդալն էլ էր արդեն ձանձրացնում:

Ահա այդ օրերին, երբ Հովիկը արդեն հուսահատվել էր անտանելի ձանձրույթից, փոստատարը բերեց Պրագայից ստացված մի նամակ: Գրում էր պրոֆեսոր Գալիմոնը:

*«Բարև, Հովի՛կ.*

*Ինչպես տեսնում ես, քեզ չեմ մոռացել: Ես համոզված եմ, որ դու վարդագույն հեղուկը խմել ես հաջորդ օրն առավոտյան: Դու կամք ունես: Դրանում բոլորովին մի կասկածիր: Ես ստիպեցի, որ հեղուկը խմես հաջորդ օրը, որպեսզի ինքդ զգաս քո կամքի ուժը:*

*Երևի քո օրն արդեն երկարել է: Դու այլևս քնի պահանջ չես զգա: Հենց այդ է իմ օգնությունը:*

*Քունը այնպիսի ֆիզիոլոգիական վիճակ է, երբ գլխուղեղի բջիջները վերականգնում են իրենց կորցրած էներգիան: Քնի ընթացքում հանգստանում են մկանները, ներվային համակարգությունը, ուղեղը: Իսկ հոգնածությունը առաջանում է այն ժամանակ, երբ մկանների մեջ հավաքվում են նյութերի փոխանակումից ոչ լրիվ օքսիդացած մասնիկներ:*

*Վարդագույն հեղուկն ընդունելուց հետո, մարդ այլևս քնի պահանջ չի զգում, որովհետև հեղուկը պայքարում է չօքսիդացած նյութերի դեմ և օրգանիզմը գտնվում է առույգ վիճակում:*

*Սիրելի Հովիկ, ես համոզված եմ, որ դու այլևս չես բողոքի ժամանակի սղությունից: Այժմ քո տրամադրության տակ է ամբողջ օրը:*

*Ես վերադառնալու եմ երկու շաբաթ հետո: Մինչ այդ, հեղուկի ազդեցությունը կանցնի: Բայց ես կարող եմ էլի նվիրել:*

Պրոֆ. ԳԱԼԻՄՈՆ Ա.»

***

Հովիկն անհամբեր սպասում էր, թե երբ է վերանալու վարդագույն հեղուկի ազդեցությունը:

Վերջապես, ինչի՞ է նման, երբ բոլորը քնում են, իսկ ինքը բվենի պես ամբողջ գիշեր արթուն է մնում:

Բայց երկար սպասելու հարկ չեղավ: Մի գիշեր, տասնհինգօրյա անքնությունից հետո, Հովիկի կոպերը սկսեցին ծանրանալ:

Հաջորդ օրը, մեր հերոսը անմիջապես մի նամակ գրեց Ալեքսանդր Եվգենևիչին:

*«Սիրելի Ալեքսա՛նդր Եվգենևիչ.*

*Վարդագույն հեղուկի ազդեցությունն արդեն անցել է. տասնհինգ օր անքուն մնալուց հետո, ես երեկ գիշեր այնպես քնեցի, որ առավոտյան չէի ուզում վեր կենալ:*

*Շնորհակալություն օգնության համար, սիրելի Ալեքսա՛նդր Եվգենևիչ: Հաջորդ սրվակը կարող եք չտալ: Գիտե՞ք, հաճելի բան չէ գիշերները ձանձրույթից գորգի վրայի նախշերը հաշվելը:*

*Դպրոցում գործերս հաջող են գնում: Գնահատականներս լավ են: Ինձ, իհարկե, օգնեց ձեր տված վարդագույն հեղուկը: Միայն թե, ավելի հարմար է ցերեկները երեք ժամ բարեխղճորեն տրամադրել դասերին, քան այդ նույն երեք ժամի համար ամբողջ գիշեր ոտքի վրա անցկացնել:*

ՁԵՐ ՀՈՎԻԿ»:

*Հ. Գ. Ես արդեն օրվա ռեժիմ ունեմ: Հիշո՞ւմ եք, դուք ասում էիք, որ կամքի տեր մարդու համար անկարելի բաներ չկան: Մայրիկը զարմացել է իմ մեջ կատարված փոփոխության վրա: Իսկ ես նրան ոչինչ չեմ ասում: Դա մեր գաղտնիքն է, այդպես չէ՞:*

ՆՈՒՅՆԸ»:



Մ. ՎԵՍՊԵՐ

Նկ. Ռ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

1.

Երեկո էր, մթնշաղ,
Մի պահ էլ շուրջը՝ խաղաղ,
Երբ դռնակից մի փոքրիկ
Նայեց Սերյոժան շեկլիկ,
Նայեց, անխոս սահեց դուրս,
Կատվի նման սուս ու փուս...
Եվ քսվելով պատերին,
Մերթ էլ փոշոտ դռներին,
Գնում էր նա կայարան
Քաջի նման անվարան:
Սակայն հանկարծ կանգ առնում՝
Դատարկ փողոցն էր դիտում,
Չլինի՞ թե անկյունից
Սև սատանա մի ֆրից
Իսկույն ճամփան իր կտրի՝
Ջրով լի կուժը կոտրի...
Բայց ինչ լա՜վ էր, դեմն ելավ
Մեր ժամապահն ու ասավ.
— Ո՞ւր ես գնում, ա՛յ տղա,
Մթնշաղին դու հիմա,
Ձեռքիդ էլ՝ ծանր մի բան,
Ունե՞ս արդյոք հրաման...
— Ես պիոներ եմ, քեռի՛,
Այս քաղաքից, տեղացի.
Ֆաշիստները անզգամ՝
Ջուրն են կտրել այս անգամ.
Դրա համար էլ ահա
Ջուր եմ տարել ձեզ հիմա...
Ժամապահը ժպտացին՝
Ճամփա տվեց տղային:

2.

Արիասիրտ, անվարան
Տղան հասավ կայարան.
Քարե հսկա շենքից ներս
Վազեց անվախ, ժպտերես,
— Ջուր եմ բերել ձեզ մաքուր,—
Կանչեց ձայնով զրնգուն:
Մարտիկները պապակած,
Առաջ եկան խիստ կամաց,
Մի-մի բաժակ խմեցին,
Սերյոժային գովեցին...
Ահա պետն էլ դատարկեց
Վերջին բաժակն ու ասաց.
— Դե՛, տուն դարձիր, շատ ապրես,
Դու էլ սրտոտ ու քաջ ես...
Սակայն տղան եռանդուն՝
Չուզեց դառնալ իրենց տուն.
— Թույլ տվեք ինձ էլ մնալ
Եվ ձեր վաշտին միանալ...
Պետը ժպտաց զարմացած,
Ապա դարձավ ու ասաց.
— Շուտով մարտը կըսկսվի...
— Ի՞նչ անենք, թող ըսկսվի.
Ջուր կբերեմ ձեզ համար,
Փամփուշտ կտամ անդադար,
Կարող եմ և կրակել՝
Ֆաշիստներին ցած բերել...
Վաշտապետը մեր հուզված
Գրկեց նրան և ասաց.
— Դեռ սովորիր, ա՛յ շեկլիկ,
Դու, քաջասիրտ իմ արծվիկ,
Առանց քեզ էլ շուտով մենք
Ֆաշիստներին կը ջարդենք:



# ԸՆԿԵՐՍ

*ՍԱՐՄԵՆ*

Եկել էր նա մեր լեռնային
Մի հեռավոր գյուղակից.
Աչքերում կար և՛ պարզություն,
Ե՛վ կարոտանք, և՛ թախիծ,
Նա դարձավ իմ դասընկերը,
Խաղընկերը միամիտ,
Ու տաս տարի մենք ապրեցինք
Որպես երկու արտակից:

Կռիվ գնաց իմ ընկերը.
Էլ չտեսա ես նրան…
Հիմա նստած եմ այս այգում,
Շուրջըս՝ ծաղկի ծիածան,

Եվ ծաղկունքի, ծառերի մեջ,
Իմ հայրենի քաղաքում,
Հպարտ գլխով, լայն ճակատով
Բարձրանում է մի արձան:

Նայում եմ ու հիացմունքից
Թևն է առնում իմ հոգին.
Իմ դեմ կանգնել է ընկերըս՝
Ոսկե աստղերը կրծքին.
Պատվանդանից ընդունում է
Գարնան շքերը շքեղ,
Եվ սիրով լի ողջույն տալիս
Թե՛ մանկիկին, թե՛ ծաղկին…

# Պատանի երաժիշտները

*Հ. ՂԱԶՈՅԱՆ* *Լուսանկար՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ*

*Բոլորաձև շարված աթոռների վրա կողք-կողքի նստած են ժողովրդական գործիքների ինքնագործ խմբակի անդամները։ Ութ հոգի են նրանք՝ տարբեր դասարաններից։ Ահա պիոներ դուդուկիստ Հովհաննես Նալբանդյանի կողքին նստել է ջութակավար, թառիստ Սպարտակ Հակոբյանը, որն անվանի բանվոր է էլեկտրասարքատուրայի գործարանում։*

*Խմբակն ուշադրությամբ է հետևում ղեկավարի նշանին։*

*Հանկարծ խզվեց լռությունն, ու դասասենյակը ողողեց հայկական ժողովրդական մի զվարթ պարեղանակ։ Սլացիկ վազքով հրապարակ մտավ դպրոցի լավագույն պարուհին՝ Նազիկը։ Պարում է Նազիկն իր ընկերների նվագի տակ, նվագում են տղաներն իրենց վարժ մատներով, նվագո՜ւմ… Թե՛ մաթեմատիկական դժվար խնդիրը, թե՛ փորձանոթները՝ քիմիայի կաբինետում, թե՛ Սպարտակի հաստոցը գործարանում՝ բոլորը, բոլորը մնացին ետևում, մոռացվեցին մի պահ։ Բոլորի ջահել հոգին համակեց այն, ինչ հավաքել, այդտեղ էր բերել տարբեր հասակի, տարբեր խառնվածքի տեր մարդկանց՝ հարազատ ժողովրդի երգի ու երաժշտության թովչանքը։*

*Վաղուց չէ, ինչ նրանք նվագում են այդպես ներդաշնակ ու սրտաբուխ, բայց ինչքա՜ն վաղուց էին նրանք երազում այդպես նվագել։*



*…Այն ե՞րբ էր, հի՞նգ, թե՞ տասը տարի առաջ. Հակոբն ինքն էլ լավ չի հիշում։ Ո՞վ գիտե, մանուկ օրերի երա՞զ է դա, թե՞ պայծառ մի հուշ…*

*Գետափին, քարերի վրա, արևակեզ ոտքերը ջրի մեջ կախած, նստել է մի փոքրիկ տղա։ Հատակ ջուրը, դիպչելով քարեքար, փշրվում է, փրփուրին տալիս ու նորից առաջ վազում մանրիկ ալիքներով։ Իրենց գարնանային երգն են սկսել սևաթ սարյակները, ասես ձայնակցելով նրանց, բզզում ու լռում են անտես ճպուռները։ Հակոբը շուռ ու մուռ է տալիս ձեռքի եղեգնը, տաշում, տաշտաշում է, անցքեր բացում։ Նա ուզում է սրինգ պատրաստել իր փոքրիկ ձեռքերով, այնպիսի մի սրինգ, որը կրկնի թե՛ սարյակների երգը, թե՛ ճպուռների բզզոցը, թե՛ ջրի քչքչոցը, նա ուզում է երգել այնպես ջերմ ու սրտառուչ, ինչպես իր ավագ եղբոր սրինգն է երգում։ Ու տաշում, տաշտաշում է նա անշունչ եղեգնը, որ կյանք ու շունչ տա նրան։*

*Իսկ հիմա… Ահա բոլորի հայացքները Հակոբին են դարձած։ Հիմա նա դուդուկի վրա նվագում է իր գիտցած եղանակներից ամենագեղեցիկը՝ «Մաճկալը»։*

Դուդուկը, մեղմ ու հնազանդ, երգում է նրա մատների տակ։ Երգն ասես բարձրանում է նրա հոգուց, բարձրանում ու համակում բոլոր լսողներին։

***

Երևանի Թելմանի անվան դպրոցի ժողովրդական գործիքների խումբը կազմակերպվեց մեկուկես տարի առաջ, դպրոցի ուսմասվար ընկեր Ստեփանյանի նախաձեռնությամբ։ Խմբակում ընդգրկվեցին շնորհալի աշակերտները։ Շաբաթը մեկ անգամ նրանք հավաքվում են հերթական փորձի։ Շուտով խմբակի շուրջը համախմբվեցին դպրոցի լավագույն երգողներն ու պարողները։ Բոլորից առաջ վազեց եկավ Նազիկ Փեփոյանը ու խնդրեց, որ իրեն ընդունեն։ Դեռ փոքրիկ աղջիկ էր նա ու, ինչպես տանը սիրում էին ասել, նոր էր գետնի երեսին երևում, երբ ընդունվեց պիոներների պալատի հայկական ժողովրդական պարի խումբը։ Չորս տարին իզուր չանցավ նրա համար ու հիմա, հենց որ նվագախումբը սկսում է «Ջանգյուլումի պարը» կամ «Հայկական կատակպար»-ը, էլ հարցնել պետք չէ, բոլորի հայացքն ուղղվում է այն կողմը, որտեղից երևալու է Նազիկը։



Իսկ Լաուրա՞ն։ Ոչ, նա այդպես համարձակ չէր։ Նույնիսկ երբ ընկեր Ստեփանյանը նրան առաջարկեց ելույթ ունենալ խմբի նվագակցությամբ, Լաուրան անկեղծորեն զարմացավ։

— Ով, ե՞ս։

Բայց չանցած մի ամիս, ոչ միայն նրա մոտ ընկերուհիները, այլև բոլորը դպրոցում լսել էին նրա գողտրիկ երգը։

— Հիմա էլ մի ադրբեջանական երգ,— նվագախմբին դառնալով խնդրում է Կիմա Ղազարյանը փորձերի ժամանակ։— Գոնե մեկը։

Ու հնչում է «Ջուջալարին», աշխույժ, կենսուրախ, վարակիչ։

Ժողովրդական գործիքների նվագախումբն օգնում է դպրոցի աշակերտությանը լսել, ծանոթանալ հայ և այլ ժողովուրդների ազգային երաժշտությանը։

Մի տարի է արդեն, ինչ դպրոցի ինքնագործ նվագախումբը զարդարում է պիոներական հավաքներն ու տոնական հանդեսները։ Խմբակի ծրագիրը շարունակ հարստանում է նոր համարներով։ Տղաները կատարում են մեր մեծ հայրենիքին, նրա աշխատանքային հերոսներին, ծաղկող Երևանին նվիրված երգեր։ Իրենց վարժ, անկաշկանդ կատարումով աչքի են ընկնում Սմբատ Կարոյանը, Լյովա Շահինյանը, Վյաչեսլավ Ստեփանյանը, Բոգդան Մկրտչյանը։ Վաղուց արդեն խմբի մասին գիտեն դպրոցի պատերից դուրս։ Նրան ջերմորեն են ընդունում նաև մեծահասակները։

Ապրիլն էր։ Զգացվում էր գարնան մեղմ շունչը։ Խաղողի դալար այգիների եզրով ավտոբուսը թռչում էր դեպի Աշտարակ, Կոշ գյուղը տանելով խմբակի անդամներին։ Ուրախ էին երեխաները, ուրախ էին թե՛ նրա համար, որ այնպես պայծառ էր շողում գարնան արևը, թե՛ նրա համար, որ խոնավ հողը բուրում էր արևի շողերի տակ և թե իրենց առաջիկա համերգի համար։ Զով քամին խփվում էր երեխաների ուրախությունից պայծառացած դեմքին։

Եվ ահա դպրոցական նվագախումբը գյուղական ակումբի բեմում է։ Նազիկն իր ջինջ ձայնով երգում է «Ինժեներ բալան»։ Դահլիճից բարի ու ժպտացող աչքերով երգող աղջկան են նայում կոլտնտեսականները՝ կանայք ու տղամարդիկ, մեծ ու փոքր։ Երբ երգը լռեց, նրանք միահամուռ ծափ տվին աշխատանքից կոշտացած ձեռքերով, իսկ մի



*տարիք.․կ գեղջկուհի, գլխաշորի ծայրով սրբելով ուրախության արցունքը, քրթմնջաց.*

*— Ապրե՛ս, ա՛յ բալա, զորանաս։*

*Հաջորդ անգամ ժողովրդական գործիքների խմբակը ելույթ ունեցավ Երևանի Կոնսերվի գործարանում։ Ահագին դահլիճը լեփ-լեցուն էր բանվորներով, ինժեներներով, տեխնիկներով... Նրանք ջերմությամբ ընդունեցին իրենց շնորհալի հյուրերին։ Մի օր էլ խմբակն հայտնվեց Երևանի Սառցի կոմբինատում, իսկ մի ուրիշ անգամ իրենց հարևանների մոտ՝ Տրամվայ-տրոլեյբուսների պարկում։ Որտեղ էլ երեխաները մտնում են որպես անծանոթ, հեռանում են լավ բարեկամների նման։*

***

*Կիրակի է։ Երևանի ուսուցչի տան դահլիճում տոնական երեկույթ է։ Հանդեսի վերջում պետք է համերգ տան Թելմանի անվան դպրոցի շնորհալի աշակերտները։*

*Ահա բեմ է ելնում Ռոզա Ասատրյանը։ Բռնված թռչնի նման թպրտում է նրա սիրտը. դեռ ոչ մի անգամ այսքան շատ մարդիկ չեն սպասել Ռոզայի երգին։ Ամբողջ դահլիճը դեպի բեմ է նայում, և ով ասես չկա այնտեղ. իր ընկերները, ուսուցիչները, հարազատները։*

*Դահլիճում լսվեցին ջութակի մեղմ թախիծով լի հնչյունները։ Այդ այն երգն է, որի խոսքն ու երաժշտությունը գրել է նրա սիրելի պոետը՝ Հովհաննես Թումանյանը։ «Ախ, ինչ լավ է սարի լանջին»,— սկսեց երգել Ռոզան, ու նրա աչքի առաջ ասես բարձրացան կաթնագույն մշուշի մեջ թաղված սարերը, ասես նա տեսավ կանաչ սարալանջերին մուշ-մուշ արածող գառների հոտը ու լսեց հովվի շվիի ձայնը...*

*Նվագում է ջութակը, իսկ երգը, մեղմ թախիծով պարուրված, հնչում է սրտաբուխ, մեղմիկ, ասես ինքն իրեն։*

*Առաջին կարգում նստած է մի ծերունի։ Նա լսում է ու հիշում իր տարաբախտ մանկությունը հեռու սարերի լանջերին, իր անմեղ խաղերը հովիվ ընկերների հետ, իր անցած երկար ու դժվար ճամփան մանկությունից մինչև ծերություն։ Լսում է երգն ու թախծոտ հուշերի միջից գորովանքով ժպտում այդ պայծառ երեխաներին, նրանց, ում շուրթերին միշտ ապրում ու ջահել է մնում մայր ժողովրդի երգը, ովքեր լի են պայծառ երազներով, ովքեր այնքան ջերմ հավատով են նայում իրենց կյանքի լույս ճանապարհին ու երգում են, երգո՜ւմ...*

## ՍԵՓԱԿԱՆ ՁԵՌՔԵՐՈՎ

*Չորրորդ դասարանում ձեռքի աշխատանքի դաս էր. սեղանների վրա դրված էին թավշյա գունավոր կտորներ, ներկեր, փոքրիկ սղոցներ, ֆաներայի և ստվարաթղթի մեծ ու փոքր կտորներ։*

*Ուսուցչուհի ընկեր Քնարիկը պահարանից հանեց մեկը մյուսից գեղեցիկ ու նուրբ ձեռքի աշխատանքներ ու դրեց սեղանին։*

*— Այս արագիլը մեր Հասմիկն է պատրաստել,— ասաց նա, մատնացույց անելով առջևի նստարանին նստած մի փոքրիկ աղջկա։— Տեսեք որքան լավ է, ասես կենդանի արագիլ լինի։*

*— Սա էլ տախտակից պատրաստած երկարաքիթ Բուրատինոն է։*

*— Ահա և շեկլիկ աղվեսը սև թիկնոցն ուսերին, գլխին՝ լայնեզր գլխարկ։ Նելլին չի մոռացել նույնիսկ գլխարկին փետուր փակցնել։ Այս էլ «Ոսկյա բանալին»...*

*Մենք հետաքրքրությամբ դիտում էինք փոքրիկների հիանալի գործերը։*

*Իսկ երեխաները տարված իրենց աշխատանքով՝ մեծ եռանդով ձևում էին, չափում, կտրում ու սոսնձում։ Աշխատանքը եռում էր դասարանում։*

*Հետո ուսուցչուհին պատմեց, թե ինչպես ձեռքի աշխատանքի դասերին երեխաները սիրով պատրաստում են նորանոր կոլեկցիաներ։*

Մ. ՄՆՀՐԱԲՅԱՆ

Դիլիջան




Ս. ԽԱՐԱԶՅԱՆ

Արագ անցնում ես, փոստատարնե՛ր,
Շրջում անդադար փողոց ու բակ,
Շրջում ամենուր, բերում լուրեր,
Մեկին՝ հեռագիր, մեկին՝ նամակ:
Անցնում եք ուրախ և անվրդով,
Բարությամբ մտնում ամեն մի տուն,
Ձեր հեռվից բերած նամակներով
Տարածում խայտանք ու խնդություն:
Հորդ անձրև լինի, թե շոգ ամառ,
Լինի ցրտաշունչ դաժան ձմեռ,
Կարծես կատակ է դա ձեզ համար,
Դարձյալ շրջում եք, փոստատարնե՛ր:
Թերթեր եք բերում, որոնք անձայն
Խոսում են զալիք կյանքի մասին,
Օրերի մասին մեր այս ոսկյա,
Ու թևեր տալիս մեր երազին:
Ձեզնով կապված է հեռուն հեռվին,
Ձեզնով նամփում ենք կարոտը մեր,
Բարևներ տանող աշխարհներին,
Բարևներ բերող, փոստատարնե՛ր:

# ԱՆՏՈՆԻՈ ԳՐԱՄՇԻ



Այս պատմվածքները գրել է աշխատավոր ժողովրդի երջանկության համար պայքարող քաջարի մարտիկ Անտոնիո Գրամշին:

Պատմվածքները գրված են բանտում:

Անտոնիո Գրամշին ապրել է Միջերկրական ծովի Սարդինիա կղզում: Նա դեռ մանկուց պայքարում էր ժողովրդի ազատ կյանքի համար:

Երբ լրացավ Գրամշու քսան տարին, նա Սարդինիայից տեղափոխվեց իտալական Տուրին քաղաքը:

Գրամշին Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի օրինակով, սկսեց իտալական բանվորներին կազմակերպել: 1921 թվականին նա ընկեր Տոլյատտիի հետ միասին հիմնադրեց Իտալիայի Կոմունիստական պարտիան:

Երբ Իտալիայում ֆաշիստներն անցան իշխանության գլուխ, Գրամշուն էլ մյուսների հետ միասին բանտ նետեցին: Ֆաշիստներն ուզում էին զաղտնի մեռցնել նրան: Տասը օր ու գիշեր շարունակ նրան քուն չտվին քնել: Տալիս էին այնպիսի ուտելիքներ, որոնք ծանր հիվանդին չէր կարելի տալ: Նրան չէին բուժում, բայց Գրամշին երբեք չհանձնվեց և շարունակում էր պայքարել ժողովրդի գործի համար: Նա գրում էր նամակներ իր կոմունիստ ընկերներին, սովորեցնում ինչպես գործել:

Տարիներ անցկացրեց Անտոնիո Գրամշին խեղդուկ, մութ ու նեղ բանտային խցում:

1937 թվականին նա մեռավ: Գրամշին բանտից իր երեխաներին նամակներ ու պատմվածքներ էր գրում: Նա հետաքրքրական և խրատական պատմություններ էր պատմում մարդկանց, բնության ու կենդանիների մասին:

Անտոնիո Գրամշուն միշտ էլ հիշում են իտալական կոմունիստները:

Իտալական կոմունիստներն այժմ քաջաբար կռվում են խաղաղության ու ժողովրդի ազատ կյանքի համար:

# ՈԶՆՈՒ ԾԱՌ



Մի անգամ ես տեսա, թե ինչպես ոզնիները խնձորներ էին հավաքում: Աշնան մի երեկո, երբ լուսինը ավելի պայծառ էր լույս տալիս, ընկերոջս հետ ուղևորվեցինք դաշտ, որտեղ աճում էին շատ խնձորենիներ: Մենք թաքնվեցինք թփուտում, քամուն հակառակ: Եվ ահա տեսանք բացատ են դուրս գալիս հինգ ոզնի. երկուսը մեծ, իսկ երեքը՝ փոքրիկ: Նրանք իրար հետևից շարժվեցին դեպի խնձորենիները, վազվզեցին խոտերում, իսկ հետո գործի անցան: Իրենց դնչիկներով և թաթիկներով նրանք գլորում էին ծառերից ընկած խնձորները և կույտ-կույտ դասավորում: Ապա ամենամեծ ոզնին դնչիկը վեր բարձրացրեց, շուրջը նայեց և ուղևորվեց խնձորների տակ ծանրացած մի փոքրիկ ծառի մոտ: Մայր ոզնու հետ միասին նրանք բարձրացան ներքևի ճյուղի վրա, ամուր նստեցին ծանր ոստին և սկսեցին ճոճել: Խնձորները թափվեցին գետնին: Այստեղ բոլոր ոզնիները՝ մեծ թե փոքր, գնդեր դարձան և սկսեցին թավալվել խընձորների վրա, ջանալով իրենց փշերը նրանց մեջ խրել: Բոլոր փոքրիկ ոզնիներին չհաջողվեց այդ անել, բայց հայր և մայր ոզնիներից ամեն մեկն իր վրա շարեց մի քանի խնձոր:



Երբ ոզնիները վերադառնում էին իրենց բները, մենք դուրս եկանք մեր թաքստոցից և խնձորների հետ միասին, ոզնիներին լցրինք զամբյուղի մեջ ու տուն տարանք:

Ես վերցրի ոզնուն և երկու ձագի: Նրանք ապրում էին ինձ մոտ բակում: Որսում էին որդեր, ուտիճներ և մայիսյան բզեզներ: Ուտում էին նրանք մրգեր և սալաթի տերևներ: Քիչ-քիչ ոզնիները սկսեցին ընտելանալ ինձ հետ և արդեն գնդիկներ չէին դառնում, երբ ես մոտենում էի նրանց: Ոզնիները շներից շատ էին վախենում:

Այդ ոզնիները ինձ մոտ քիչ ապրեցին. հավանաբար նրանց գողացավ աղվեսը, որը սովորաբար որսում է նրանց:



# ԹԵ ԻՆՉՊԵՍ ՄԱՐԴԸ ՓՈԽԵՑ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ

Ահա մի հեքիաթ, որ ես լսել եմ իմ Հայրենիքում:

Սենյակում քնած էր մանկիկը: Նրա կողքին կարով լի փոքրիկ կուժ էր դրված: Մինչ երեխան քնած էր, մկնիկը մոտ վազեց և խմեց ամբողջ կաթը: Արթնացավ մանկիկը, կաթը չգտավ և լաց եղավ: Ամաչեց մկնիկը, երբ տեսավ, որ մանկիկը իր պատճառով առանց կաթի է մնացել և վազեց այծիկի մոտ:

— Այծի՛կ ջան, ա՛յ այծիկ, ինձ մի քիչ կաթ տուր, որ մանկիկին խմեցնեմ:

— Թարմ խոտ բեր ուտեմ, այն ժամանակ մանկիկին կաթ կտամ,— պատասխանեց այծը:

Մկնիկը վազեց խոտ բերելու: Տեսնում է ամբողջ խոտը դաշտում չորացել է, որովհետև աղբյուրը նրան էլ ջուր չի տալիս: Մուկը շտապեց աղբյուրը ջրի: Նայում է, աղբյուրն էլ ցամաքել է. կովի ժամանակ քանդել էին:

Եվ խնդրում է աղբյուրը մկնիկին մի վարպետ որմնադիր ուղարկել իր մոտ:



Որմնադիրը քար պահանջեց, որ աշխատի: Վազեց մկնիկը սարի մոտ.

— Սա՛ր ջան, ինձ քար տուր:

— Ա՜խ, մկնիկ, մկնիկ, քարի ի՞նչ ժամանակն է,— պատասխանեց սարը:— Դաժան վանառականները անտառի ծառերը կտրեցին, որոնք աճել էին իմ լանջերին, թափ տվեցին նրանցից ամբողջ հողը և ահա կանգնած եմ քամուց, անձրևից ու կիզիչ արևից ճաքճքած:

Խղճաց մկնիկը սարին, պատմեց նրան, թե ինչի համար են պետք քարերը և խոստացավ, որ երբ մանկիկը մեծանա, սարը կծածկի սոճիներով, կաղնիներով և շագանակենիներով: Այն ժամանակ սարը քար տվեց: Որմնադիրը շինեց ջրհորը: Աղբյուրը ջրեց հողը: Դաշտում աճեց խոտը, և այծիկը կաթ տվեց մանկիկին:

Մանկիկն արագ մեծացավ և դարձավ մեծ ու ուժեղ տղամարդ: Նա պտղատու հողով ծածկեց լեռների մերկ լանջերը և տնկեց զանազան ծառեր: Սարը կենդանացավ, կանաչեցին ծառերը, զնգացին թռչունների ուրախ ձայները: Ծառերի խիտ սաղարթը պաշտպանում էր սարը արևից, իսկ նրանց պլացիկ բները պահպանում էին նրան քամուց: Անձրևի ժամանակ ծառերը պահում էին ջրի բուռն հոսանքները, բույլ չէին տալիս ամայացնել սարի մոտի հարթավայրը:

Այդպես մարդը փոխեց բնությունը:

## ԽԱՂ

Գ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Ես գալիս եմ
Հեռու հանդից,
Կոմբայնավար
Սեքի մոտից:

Ճամփա տվեք
Պահեստ գնամ,
Բերքը թափեմ
Ու ետ դառնամ:

Պը-պի՛պ, պի-պի՛պ,
Էյ-հե՜յ, տղերք,
Իմ ավտոյին
Ճամփա տվեք:

Ես գալիս եմ
Ուրախ երգով,
Ավտոս լիքը
Առատ բերքով:

Էյ, հե՜յ, տղե՛րք,
Հեռու փախեք,
Իմ ավտոյին
Ճամփա տվեք:





# ՓՈՔՐԻԿ ՍՈՒՐԻԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ



ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

## 1. ՍՈՒՐԻԿԸ ԼՈՒՍՆԻ ՎՐԱ

*Կես գիշերին Սուրիկը զարթնեց ինչ-որ բանից անհանգստացած։*

*Բաց պատուհանի մոտ դրված նրա մահճակալին նայում էր լիալուսինը։*

*Լուսինը զարթնեցրեց Սուրիկին։ Լսվում էր աքաղաղների կանչը։ «Երևի լուսաբացը հեռու չէ» մտածեց Սուրիկը։*

*Նա լայն բացված աչքերով նայում էր լուսնին։ «Հայրիկն ասում է, որ լուսինն էլ, աստղերն էլ մեր երկրի նման երկրներ են։ Զարմանալի բան,— մտածեց Սուրիկը,— ինչ լավ կլիներ մի անգամ ընկնել լուսնի վրա և նայել երկրին, նայել և տեսնել, թե ինչպես իր քույրը՝ Անահիտը, բակում գնդակ է խաղում, կամ ինչպես իր ընկերները լողանում են գետում։ Ա՜խ, գոնե մի անգամ, գոնե մի օրով ընկնել լուսնի վրա…*

*Այս մտքերի մեջ աչքը փակեց Սուրիկը և հանկարծ տեսավ բաց պատուհանի մեջ մի հսկայական գիսաստղ, մեծ, պոչավոր մի աստղ, այն, ինչ նա տեսել էր մի անգամ հայրիկի գրքերից մեկում։*

*— Գնանք,— ասում է գիսաստղը,— ես քեզ կտանեմ լուսնի վրա։ Միայն թե դու ամուր նստիր վրաս և պինդ բռնիր իմ մազերից։*

*Սուրիկը վեր թռավ տեղից և մի րոպեից հետո նա սավառնում էր բաց երկնքով դեպի վեր, դեպի լուսինը՝ գիսաստղի մազերից ամուր բռնած։*

*Ինչքան գնացին, քանի ժամ, օր կամ գուցե տարի անցավ, Սուրիկը չի հիշում, նրանք թռչում էին վիթխարի աստղերի միջով և ահա իջան սպիտակ հողի վրա, իսկ հեռվում բարձրանում էին սպիտակ լեռներ։ Սուրիկին թվաց, որ լուսնի վրա ձմեռ է, բայց ոչ, եղանակը շատ տաք էր։*

*— Իսկ ո՞ւր են լուսնի քաղաքը և մարդիկ,— հարցրեց Սուրիկը։*

*— Լուսնի վրա ոչ ոք չի ապրում, անմարդաբնակ է լուսինը,— բացատրեց Գիսաստղը։*

*— Իսկ ինչո՞ւ են հողը, լեռներն սպիտակ,— հարցրեց Սուրիկը։*

*— Դա հող չէ, եթե հող լիներ, գուցե և բնա-*



կության լիներ... կիր են, լեռներն էլ, դաշտերն էլ, ողջ լուսինը կրային է։

— Իսկ ո՞ւր է երկիրը, ես ուզում եմ տեսնել մեր տունը։

Գիսաստղը ծիծաղեց.

— Ձեր տունը չես կարող տեսնել։ Ահա, տեսնո՞ւմ ես այն հսկայական լուսինը, դա է երկիրը։

— Ետ գնանք,— խնդրեց Սուրիկը,— ինձ տուն տար։ Այստեղ տխուր է։

Քիչ հետո նրանք սավառնում էին դեպի երկիր։

Որքա՞ն անցավ, մի ժամ, մի օր կամ գուցե տարի, Սուրիկը չի հիշում, բայց ահա Գիսաստղը հասավ իրենց տան բաց պատուհանին, և Սուրիկը նետվեց մահճակալի վրա, ուրախ ու երջանիկ։

Այդ միջոցին մայրը զարթեցրեց Անահիտին և Սուրիկին։

Նախաճաշի ժամանակ Սուրիկը ուզեց պատմել իր ճանապարհորդության մասին, բայց մտածեց, որ միևնույն է, նրան չեն հավատա և նա որոշեց այդ մասին պատմել, երբ կմեծանա։

Օ՜, նա անպայման, անպայման կպատմի իր զարմանալի ճանապարհորդության մասին։

## 2. ՊԱՐՏԱՃԱՆԱՉ ՍՈՒՐԻԿԸ

Սուրիկը դասերից հետո դպրոցից շտապում էր տուն ճաշելու և դասերը պատրաստելու համար։

Անցնում է Սուրիկը կամուրջի վրայով, իսկ ներքևից կանչում է գետը։

— Եկ, Սուրի՛կ, եկ, նստիր իմ ափին, հանգըստացիր, կուզես՝ խաղա ջրերիս հետ, կուզես՝ լողացիր...

— Չեմ կարող, գե՛տ,— պատասխանում է Սուրիկը,— ես տուն պիտի գնամ, պիտի ճաշեմ և հետո վաղվա դասերը պատրաստեմ։

Սուրիկն անցնում է կամուրջը, և ահա ուռենու վրա նստած ճնճղուկները կանչում են Սուրիկին։

— Եկ, Սուրի՛կ, եկ, նստիր ուռենու ստվերի տակ, լսիր մեր երգը։ Այնպես լավ է ուռենու տակ, իսկ մենք քեզ համար կերգենք այնպիսի երգեր, որ դու գոհ կմնաս...

— Չեմ կարող, ճնճղուկնե՛ր,— պատասխանում է Սուրիկը,-- ես տուն պիտի գնամ, պիտի ճաշեմ և վաղվա դասերը պատրաստեմ։

Սուրիկը հասավ իրենց այգու դռան, դուռը բացեց ու ներս մտավ։ Հենց իրենց տան դիմաց, ծաղկանոցից ոչ հեռու, կանգնել էր խնձորենին՝ զարդարված կարմիր խնձորներով։

— Եկ, Սուրի՛կ, բարձրացիր իմ ճյուղերի վրա, խնձոր քաղիր, կեր, կուզես՝ մի քանի հատ էլ հետդ վերցրու...

— Չեմ կարող, սիրելի խնձորենի, չեմ կարող,— պատասխանում է Սուրիկը,— ես տուն պի-

տի գնամ, պիտի ճաշեմ և վաղվա դասերը պատրաստեմ։

Ծաղկանոցի մոտ Սուրիկին բռնեցին ծաղիկները։

— Ո՞ւր ես շտապում, Սուրի՛կ, ո՞ւր, ե՛կ, ծաղիկ քաղիր, փունջ կապիր, զբաղվիր մեզ հետ,

— Չեմ կարող, ծաղիկնե՛ր, չեմ կարող,— պատասխանում է Սուրիկը,— ես հիմա պիտի ճաշեմ և դասերս պատրաստեմ։

Սուրիկը տուն մտավ, լվացվեց, մայրիկի և Անահիտի հետ ճաշեց, նստեց իր գրասեղանի մոտ։

Երբ նա վերջացրեց իր պարապմունքը, ուրախ-զվարթ դուրս եկավ այգի։

Արևը փայլում էր վերից, ծաղիկները քաղցր բուրում էին։ Ծառերի վրա երգում էին թռչունները, կարծես գովում էին պարտաճանաչ Սուրիկին։

# ՓՈՔՐԻԿ ԼՈՒՍԱՆԿԱՐԻՉԸ

*Ա. ԴԱՐԲՆԻ* *Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ*



Ի՞նչ եմ ասում. բա դասե՞րս։
Լսի՛ր, փի՛ղ ջան,
Ապարատս շատ է պստիկ.
Մի քիչ կուչ եկ,
Կամ թե՝ նստիր,
Ուրիշ խոսքով՝
Քիչ փոքրացիր,
Քեզ նկարեմ՝
Ուրախացիր...

Փիղը շարժեց մեծ կնճիթը.
— Բարի, բարի,
Հիմա նստեմ,
Դու նկարիր,
Նկարս դիր ծրարի մեջ,
Նամակ գրիր մի քանի էջ
Եվ ուղարկիր դու Հնդկաստան,
Որ հարազատ քրոջս տան...



Մեր վարպետի
Գործը վատ է.
— Այս ի՞նչ փոքրիկ
Ապարատ է։
Մեծ ապարատ որտե՞ղ ճարեմ,
Որ ճսկային լավ նկարեմ։
Նայում եմ աջ՝
Մի լայն ականջ,
Նայում եմ ձախ՝
Կնճիթն է կախ,
Գնում եմ մոտ՝
Դեմս մի ոտ։
Հա շարժվում եմ առաջ ու ետ,
Բայց չեմ գտնում հարմար մի կետ։
Ես ո՞ւմ դիմեմ։
Ո՞վ ինձ կօգնի։
Փղի ձեռքին
Մարդ կհոգնի։
Թե՞ չարչարվեմ մի քանի օր
Ու նկարեմ կտոր-կտոր։
Հետո կցեմ այդ մասերը...

# Վայանները

Գործարանային դարբասների մոտ, ասֆալտապատ հրապարակի վրա վազվզում են տասներկուտասնչորսամյա տղաներ ու աղջիկներ: Գարնանային մեղմ քամուց փողփողում են բրդյա ու բրեզենտյա թեթև կուրտկաների տակից դուրս պրծած կարմիր երիզավոր կապույտ վզկապները:

— Վայաններ են,— սիրալիր ժպիտով ասում է ուղեկիցս, որը «Ռենո» ավտոմոբիլային գործարանի բանվոր է:— Մենք այդպես ենք կոչում փոքրիկ կոմունարներին: «Վայան» նշանակում է խիզախ: Ֆրանսիայում պիոները իրոք պետք է լինի խիզախ և արի:

— Իսկ ինչո՞ւ են պիոներները կարմիր երիզավոր կապույտ վզկապ կրում: Ի՞նչ է նշանակում դա,— հարցրի ես:

— Դուք իմ հագին տեսնում եք բանվորական արտահագուստ,— պատասխանում է ինձ ուղեկցողը,— նա կապույտ գույն ունի: Հիմա վերև նայեք: Օրը լավ է, արևոտ, տաք, և երկինքը՝ կապո՜ւյտ-կապո՜ւյտ: Երկինքը խաղաղ է: Թող միշտ այդպես էլ մնա: Թող մեր կյանքը երբեք չմթագնեն պատերազմի ամպերը: Մեր պիոներների վզկապների կապույտ գույնը խաղաղ աշխատանքի, խաղաղ կյանքի խորհրդանիշն է:

Իսկ այժմ նայեք այս շենքին: Տեսնո՞ւմ եք կտուրի վրայի կարմիր դրոշակը: Դա Կոմունիստական պարտիայի, բանվոր դասակարգի դրոշակն է: Այդ դրոշակը ներկված է նրանց արյունով, ովքեր պայքարել են իրենց ժողովրդի երջանկության համար: Պիոներական վզկապի կարմիր երիզը հիշեցնում է պատանիներին. մի՛ մոռացեք նրանց, ովքեր ընկել են պայծառ ապագայի, լավագույն կյանքի համար մղված մարտերում, պահպանեցե՛ք խաղաղ աշխատանքը, խաղաղ կյանքը: Արժանի՛ եղեք ձեր խիզախ հայրերին ու պապերին:

Մեր խոսակցության ժամանակ վայանները ինչ-որ տեղից քաշ տալով բերին երեք մեծ արկղ և ասֆալտի վրա բեմ պատրաստեցին: Շատերն արդեն բարձրացել էին արկղերին, իսկ միքանիսը արկղերի կողերին արագ-արագ թղթեր էին կըպցընում, որոնց վրա մեծ-մեծ տառերով պարզ գրված էր. «Մենք չենք ուզում խաղալ Փարիզի փոշոտ փողոցներում: Օգնեցեք մեզ դուրս գալ քաղաքից և գնալ անտառ, դաշտ»: Հետո այդ երեխաները մի անգամ էլ նայեցին իրենց կատարած աշխատանքին և նույնպես բարձրացան արկղերի վրա: Եվ հանկարծ խիզախների ձեռքերին երևացին երաժշտական պարզ գործիքներ՝ շրթնահարմոնիկներ, ծխախոտի բարակ թղթով պարուրված սանրեր, պղնձյա թասեր, գդալներ:

Հենց այդ պահին կրնկի վրա բացվեցին գործարանի դարբասները, և կապույտ արտահագուստներով հազարավոր բանվորներ խուժեցին փողոց:

— Ուշադրությո՜ւն,— դիրիժորը դիմեց նվագախմբին:

Դիրիժորը, գանգրահեր ու սևաչյա մի տղա՝ հագած կարճ շալվար և մեծ-մեծ կոշիկներ, թափահարեց փայտիկը: Հնչեց ֆրանսիական ուրախ պոլկան: Այն բանվորները, որոնք կանգնած էին բեմի մոտ, սկսեցին ոտքերով դոփել և ծափ տալ: Ամեն կողմից լսվեցին ոգևորող բացագանչություններ:

— Ավելի ուրա՜խ, ավելի ուրա՜խ... Դե՛, մեծացրեք շրջանը... Պոլ, Ժանին, ցույց տվեք, թե մեր ցեխը ինչպես է պարում:

Դա անսովոր համերգ էր, որին մասնակցում էր հրապարակի ամբողջ բազմությունը: Խիզախները երգեցին Փարիզին նվիրված մի կատակերգ, և չկար մի մարդ, որ կրքոտ կերպով չձայնակցեր կրկներգին: Դժվար էր որոշել, թե որտեղ է բեմը և որտեղ հանդիսասրահը:

Բայց ահա պատանի արտիստները միանգամից շուռ եկան, և նրանց յուրաքանչյուրի ձեռքերին երևացին թիթեղյա տուփիկներ: Թռչելով արկղների վրայից, վայանները սուզվեցին յուղոտ արտահագուստների կապույտ օվկիանոսը: Փարիզի բանվորները փոքրիկ կոմունարների ամառա-



յին հանգստի համար չխնայեցին իրենց վերջին կոպեկները:

Վազելով ինձ մոտեցան երկու տղա և, ցույց տալով ձեռքերի բացիկները, ասացին.

— Վերցրեք, հիսուն ֆրանկ:

Բացիկի վրա ես տեսա Փարիզի երեխաներին: Փոշու մեջ կորած, նրանք խաղում էին սալահատակի վրա: Ֆրանսիայի աշխատավորների երեխաների համար չկան առողջապահական հրապարակներ, քաղաքամերձ ճամբարներ: Եվ Վայաններն իրենց ավագ ընկերների, կոմունիստների և ռեսպուբլիկական երիտասարդական Միության անդամների օգնությամբ որոշել էին ամառային ճամբարներ ստեղծել: Դրա համար փող էր հարկավոր, իսկ մթերքների բարձր գների և ցածր աշխատավարձի առկայության պայմաններում ոչ-բոլոր բանվորական ընտանիքներում էր փող գտնվում:

Եվ ահա վայանները համերգներով ելույթներ են ունենում գործարանների ու ֆաբրիկաների առաջ, տարածում են հատուկ բացիկներ, թիթեղյա բաժակ-խնայատուփերով մտնում են աշխատավորների բնակարանները: Նրանց երբեմն հաջողվում է հավաքել բավականաչափ գումար և այդ փողերով քաղաքից դուրս ուղարկել մեծ թվով երեխաների:

Համերգը վերջացավ:

Իմանալով, որ ես Սովետական Միությունից եմ, Մոսկվայից, վայանները վազեցին իմ կողմը:

Եվ ահա ես շրջապատված եմ խիզախների ամուր օղակով: Սովետական պիոներներին նվիրելու համար ինձ տալիս են ֆրանսիական վայանների վզկապներ: Մի քանիսին թվում է, թե մեկ հատը քիչ է և տալիս են երկրորդը, երրորդը, չորրորդը...

— Սա տարեք Մոսկվա...

— Իսկ սա՝ Ստալինգրադ... Մեզ մոտ Փարիզում կա «Ստալինգրադ» հրապարակ:

— Սա Լենինգրադ տարեք...

— Սա էլ Սև ծովի կողմերը...

Իմ փոքրիկ բարեկամներ: Ես չգիտեմ, դուք լսո՞ւմ եք իմ ձայնը, բայց ուզում եմ ձեզ ասել, որ ես ձեր տված վզկապները հանձնեցի սովետական պիոներներին: Բոլորովին վերջերս ես եղա Մոսկվայի մարզի Կունցևոյի շրջանի պատանի պիոներների հավաքին: Ես պատմեցի ձեր մասին: Եվ երբ Կունցևո քաղաքի պիոներուհի Սվետլանան ընդունեց Փարիզի վայանների կապույտ վզկապը, հավաքին մասնակցող վեց հարյուր երեխա ոտքի կանգնեցին, պիոներական պատիվ վերցրին և բարձր «ուռա»-ներով ողջունեցին ձեզ՝ Փարիզի կոմունարների հետնորդներին, ձեր խիզախության, ձեր գործերի համար:

ՎԻԿՏՈՐ ԽՄԱՐԱ.



# ԿՐԻԱՆ ՈՒ ՁԱԳԸ

ՀՈՒՌՈՍ ԱՓԵՐ

Մի փոքրիկ ձագ ուներ կրիան,
Անչափ շատ էր սիրում նրան.
Մեջքին առած ման էր գալիս,
Կապույտ լճում լող էր տալիս,
Լող էր տալիս ուրախանում՝
Իր ձագուկով հպարտանում:
Անցան օրեր ու տարիներ,
Էլ չէր կարող մայրը տանել.
— Հիմա ինքդ լող տուր գնա,
Հույս մի դնիր էլ ինձ վրա.
Տեսնում ես, որ ծերացել եմ
Ծերացել եմ՝ ուժս պակսել:
Իսկ ձագուկը հանգիստ նստել,
Էլ չէր ուզում մեջքից իջնել:
Լաց էր լինում մայրիկ կրիան,
Բայց չէր լսում ձագը նրան:
Ու մի օր էլ փորձի համար
Մայրը ձագին գլորեց վար,
Ինքը իսկույն լճում սուզվեց,
Ձագը մենակ ափին կանգնեց.
Ծվծվում էր, լալիս տխուր
Մտածում էր, ո՞ւր գնա, ո՞ւր...
Որտեղից որ հենց այդ պահին
Մի գորտ թռավ, նստեց մեջքին.
Ու ձագուկին այնպես թվաց,
Թե մի ժայռ էր մեջքին դրած,
Երբ որ ընկավ այդ նեղ օրը,
Այն ժամանակ խղճաց մորը:
— Չգիտեի ինչ բան է ցավ,
Սա ինձ համար խրատ դարձավ:—
Եվ այն օրից մայր ու որդի
Լող են տալիս իրար կողքի,
Լող են տալիս ուրախանում,
Իրար սիրում, շահում, պահում:



# ԻՆՉՊԵՍ Է ՏՊԱԳՐՎՈՒՄ «ՊԻՈՆԵՐ ԿԱՆՉԸ»

Է. ՅԱՎՐՈՒՄՅԱՆ

*Արևի առաջին ճառագայթները ցրում են լուսաբացի մշուշը: Առավոտ է: Տներում մարում են էլեկտրական լամպերը. սկսվում է նոր օրը: Մեծերը գործի են շտապում, փոքրերը՝ դպրոց: Փոստից դուրս է գալիս կաշվե պայուսակն ուսին մի մարդ, նրա թևի տակ թերթերի և ամսագրերի կապոց կա: Նա շտապում է, բերում է սկսվող օրվա թարմ նորությունները, «Պրավդա», «Սովետական Հայաստան», «Կոմունիստ» և այլ թերթեր, նամակներ, հեռագրեր, շտապում է շուտ հասցնել, քանի դեռ մարդիկ չեն մեկնել աշխատանքի, վազում է, անհանգստանում: Այդ մարդը փոստատարն է:*

*— Ձեզ՝ «Պրավդա», «Սովետական Հայաստան»,— ասում է նա շտապ,— իսկ քեզ, փոքրիկս, «Պիոներ կանչ»: Դու վերցնում ես պատկերազարդ թերթը, սիրտդ լցվում է բերկրանքով: Թերթը քեզ ծանոթ է. դու հափշտակությամբ նայում ես նրա էջերը, տեսնում քեզ ծանոթ պիոներական դրուժինաների, հավաքույթների, արշավների լուսանկարները: Նոր պատմվածքներ, կենդանիների նկարներ ու ծաղիկներ, վատ սովորող աշակերտների ծաղրանկարներ: Բայց դու գիտե՞ս արդյոք, թե ինչպե՞ս է պատրաստվում քո սիրելի թերթը և ո՞վ է պատրաստում այն ու որտեղ: Եթե չգիտես, լսիր՝ պատմեմ:*

*Երևան քաղաքում, Նալբանդյան փողոցի վրա մի գեղեցիկ շենք կա, վրան գրված է «Տուն № 4»: Երբ էլ որ մտնեք այդ տունը, դուք այնտեղ կտեսնեք պիոներների, դպրոցականների, ուսուցիչների, գիտնականների ու գրողների: Ոմանք նամակներ են բերել, ոմանք եկել են խորհուրդներ ստանալու, ոմանք էլ եկել են պատմելու իրենց օղակի կամ դրուժինայի աշխատանքների մասին, նկարներ, մոդելներ ցույց տալու: Այստեղ են գալիս նաև այն պատանիներն ու աղջիկները, որոնք փորձում են բանաստեղծություններ, պատմվածքներ գրել, կամ նկարել ու ձեռագործով զբաղվել. բոլորին ընդունում և օգնում են խմբագրության աշխատողները: Դու եթե եղել ես այստեղ, գիտես նրանց ազգանունները, ճանաչում ես շատերին: Իսկ այն մարդիկ, որոնք տպում են «Պիոներ կանչը», դու նրանց չգիտես:*









*Եթե երեկոյան անցնես երկրորդ տպարանի մոտով, դու կնկատես, որ շենքի երրորդ հարկի պատուհաններում վառվում է սպիտակ, ցերեկային լույսը։ Եթե չես տեսել, նայիր, դա քեզ շատ դուր կգա։ Քո թերթը խմբագրվում և ուղարկվում է այստեղ։ Նա անմիջապես ընկնում է լինոտիպի ցեխը։ Այստեղ իրար կողքի շարված են տասնհինգ մեքենա. նրանք պատրաստված են մեր հայրենիքում։ Լինոտիպ մեքենան միանգամից մի ամբողջ տող է ձուլում։ Այդպիսի մի լինոտիպի առջև նստած է Ջավեն Աղաջանյանը։ Նա փորձված լինոտիպիստ է, մեծ արագությամբ ձուլում է «Պիոներ Կանչի» տողերը և շարվածքը ուղարկում էջերը կապելու ցեխը կամ ինչպես ասում են՝ էջկապի ցեխը։*

*Այստեղ Սիրանույշ Երանոսյանը ներկում է պատրաստի շարվածքը և հատուկ մեքենայի օգնությամբ հանում է շարվածասյունի արտատիպը, իսկականի հետ միասին ուղարկում թերթի սրբագրիչին։ Սրբագրիչն ուղղում է սխալները, և դրանից հետո սկսվում է էջկապը։ Այդ դժվարին ու պատասխանատու աշխատանքը կատարում է փորձված բանվոր Գևորգ Մանուկյանը։ Այդ միջոցին ցինկոգրաֆիայի բաժնում հատուկ ապարատով պատրաստում են թերթի նկարները։ Նրանք սովորական նկարները տեղափոխում են ցինկի վրա, և երբ նկարն արդեն ստացվում է ցինկի վրա, դառնում է կլիշե։ Կլիշեներն իջնում են էջ կապելու բաժինը և տեքստի հետ միասին, համաձայն նախօրոք կազմված մակետի, տեղադրվում են այնպես, ինչպես դուք տեսնում եք թերթի էջերում։ Եվ երբ այստեղ ամեն ինչ ավարտված է, էջերը հանձնվում են ճնշիչ մամուլին։ Այս ցեխում աշխատում է երիտասարդ, բայց փորձված բանվոր Խաչիկ Կարապետյանը. նա կոմերիտական է, լավ գիտե իր գործը։ Խաչիկ Կարապետյանը կապած էջերի վրա հատուկ ստվարաթուղթ է դնում, ապա էջերը դնում է ճնշիչ մամուլի տակ և իջեցնում լծակը։ Մամուլի կարմիր սլաքը ցույց է տալիս 120 թիվը։ Այդ նշանակում է, որ մթնոլորտային ճնշումը մեկ քառակուսի սանտիմետր էջի վրա հասնում է 120 կիլոգրամ ճնշման։ Մի քանի րոպեից հետո թերթի մատրիցան պատրաստ է։ Մատրիցան տեղափոխվում է կարծրատիպ ցեխը, իսկ կապած էջերը վերադառնում են էջկապի ցեխը. դրանք այլևս պետք չեն։ Այստեղ հատուկ ձուլող ապարատում եռում է մետաղի հալոցքը։ Այդ ապարատն ունի սառեցման սիստեմ. մատրիցան դնում են նրա միջև և երկու րոպեի ընթացքում ստվարաթղթի փոս ընկած տեղերում ձուլվում են նկարները, տառերը, գծերը և ստացվում են կիսակլոր թերթի ձուլված էջերը։*

*Այդպիսով թերթի նախապատրաստական բոլոր աշխատանքներն արդեն ավարտված են։ Այստեղից արդեն այդ կարծրատիպն ուղարկվում է վերջին՝ տպագրական ցեխը, որը կոչվում է ռոտացիոն ցեխ։ Այս ցեխի հզոր և մեծ մեքենաները մի ժամվա ընթացքում տպագրում են քսան հազար օրինակ թերթ և ոչ միայն տպագրում, այլև հաշվում են։ Երբ այն տպում է հիսուն օրինակ, հիսունմերորդ օրինակը մի կողմ է նետում ընդհանուր հաշվից։ Այդ հնարավորություն է տալիս նրա վրա աշխատողին՝ իմանալու թերթերի քանակը։ Արդեն բավականին երկար ժամանակ է, ինչ այդ ցեխում է աշխատում տպագրիչ Սուրեն Հովսեփյանը։ Երբ Հովսեփյանը ստանում է թերթի առաջին համարը, այսպես կոչված՝ ազգանշանային*



համարը, այն ուղարկում է «Պիոներ կանչ» թերթի խմբագրին։ Վերջինս նորից է ստուգում, եթե սխալներ չկան և թերթի որակը լավ է, ստորագրում է թերթը։ Այդ նշանակում է՝ կարելի է տպագրել ամբողջ տիրաժը։ Սուրեն Հովսեփյանը լրիվ թափով գործի է դնում մեքենան և տպագրում է ձեր սիրած թերթը։

Ահա, թե ինչպես է ստացվում ձեր թերթը և ովքեր են աշխատում նրա վրա։ Եվ այդ բոլորն արվում է ձեզ համար, որ դուք կարդաք, սովորեք և խելացի մարդիկ դառնաք։

Գրքերի աշխարհում

# Դարերի խորքից

1942 թվականին Մոսկվայի տակ զոհվում է մի սպա։ Նրա ծնողները թույլտվություն են ստանում որդու աճյունը հայրենիք տեղափոխելու։ Սակայն պարզվում է, որ նույն գերեզմանում մի ուրիշ մարտիկ էլ է թաղված։ Ի՞նչպես իմանալ երկուսից որն է իրենց որդին։ Ծնողները խնդրում են սովետական գիտնական Գերասիմովին վերականգնել իրենց որդու դեմքը։ Աշխատանքն ավարտելուց հետո, Գերասիմովն առաջարկում է լուսանկարի հիման վրա որոշ փոփոխություն մտցնել իր սարքած դիմաքանդակի մեջ։ Մայրը չի ուզում և ասում է. «Նա վերջին շրջանում այդպես էր»։



Սկյութական բազավոր Սկիլուրը

Եվ այդպես, Գերասիմովին տալիս էին մի որևէ գանգ, որի մասին նա նախօրոք ոչ մի պատկերացում չուներ և միայն գանգի ոսկորների հիման վրա նա մեծ հաջողությամբ վերականգնում էր դեմքը այնպես, ինչպես եղել էր կյանքում։ Ականատեսները նայելով մի քանդակի, ասել էին. «Սա մարգիչ Լուստալոն է»։ Այժմ էլ մայրն էր վկայում, որ Գերասիմովի քանդակը ոչ միայն ճիշտ է, այլ ավելի է նման որդուն, քան նույնիսկ լուսանկարը։

Գերասիմովը այս փայլուն հաջողությանը հասավ լուրջ և քրտնաջան աշխատանքի շնորհիվ։ Նա օգտագործեց իրենից առաջ եղած գիտական փորձը։ Դեռ Ժորժ Կյուվյեն բրածո կենդանու ոսկորների հիման վրա վերականգնում էր կենդանու կերպարանքը։ Այսպես նա ստացել էր ձիու, գետնակինճի, փղի նախորդների նկարները։

Կես դար առաջ փորձեր եղան գանգն օգտագործել դեմքը վերականգնելու համար։ Գիտնականների մեծ մասը, սակայն, գտնում էր, որ կարելի է ստանալ միայն մարդու մոտավոր, ռասայական դեմքը, իսկ անհատականը վերականգնել՝ հնարավոր չէ։ Սովետական գիտնական Գերասիմովը ուզում էր դեմքը այնքան նման լինի, որ մարդ նայի ու ճանաչի, ասի՝ սա Ուշակովն է, սա՝ Մարիա Դոստոևսկայան, իսկ սա էլ՝ Անդրեյ Բոգոլյուբովսկին։ Նա գտնում է, որ կապ կա դեմքի փափուկ հյուսվածքների և գանգի ոսկորների միջև.



Նեանդերթալցի տղայի գլուխ

Այժմ Գերասիմովը որոշում է գանգը կնոջ է պատկանում, թե՞ տղամարդու, քանի՞ տարեկան է եղել նրա տերը և այլ մանրամասնություններ։ Միշտ չէ, որ գանգը, անվնաս,

ամբողջական է լինում։ Հաճախ Գերասիմովը այնպիսի գանգի հետ է գործ ունենում, որ հազարավոր տարիներ հողի մեջ է եղել, վնասված և նույնիսկ քայքայված։ Օրինակ, Լենկ Թեմուրի գանգի մի մասը քայքայվել էր դամբարանի մեջ ներծծված ջրի պատճառով։ Այդ դեպքում, սկզբում պետք է վերականգնել՝ կարկատել, իրար կպցնել գանգի կոտրված մասերը և հետո՝ վերականգնել դեմքը։

Գերասիմովը դեմքի վերականգնումը սկսեց ոչ թե մարդուց, այլ կապիկից։ Նրա առաջին փորձը շիմպանզեի գլխի վերականգնումն էր։ Այնուհետև նա վերստեղծում է պիթեկանտրոպի, սինանտրոպի, նեանդերթալցու, նոր քարե դարի, երկաթի և բրոնզի դարերի մարդկանց դիմաքանդակները։ Շատ հետաքրքիր է նեանդերթալցու դեմքի վերականգնման պատմությունը։



Յարոսլավ Իմաստուն

Ուզբեկստանի Թեշիկ-Թաշի անձավում գտնըվում է մի գանգ, որը 150 կտորի էր բաժանված։ Գերասիմովը վերստեղծեց նրա կերպարանքը։ Պարզվում է, որ այդ գանգի տերը 9—10 տարեկան նեանդերթալցի տղա է եղել և ապրել է 75 հազար տարի մեզանից առաջ։

Բրածո գանգերի հիման վրա ստեղծված դիմանկարների այս պատկերասրահը ցույց է տալիս մարդկության զարգացման պատմությունը՝ պիթեկանտրոպից մինչև ժամանակակից մարդը։ Մենք տեսնում ենք, թե ժամանակի ընթացքում ինչպիսի փոփոխության է ենթարկվել մարդու արտաքինը։ Ոչ մի ժամանակակից մարդ չի տեսել, թե ինչպիսին են եղել մեր նախնիները. նրանք մեզ պատկերվել են գրքերում, երևակայության օգնությամբ։ Բայց գիտության շնորհիվ այժմ մենք կարողանում ենք տեսնել, թե ինչպիսի դեմք են ունեցել նրանք։



Հնադարյան Խորեզմի բնակիչ

Այդ պատկերասրահում մենք տեսնում ենք մեր Հայրենիքի տարբեր մասերում, տարբեր ժամանակներում ապրած հնադարյան բնակիչների շատ դեմքեր։ Ահա 10-րդ դարի սլավոնացին, 6-րդ դարի հին Խորեզմի բնակիչը, մ. թ. ա. 5-րդ դարի սկյութացին, մ. թ. ա. 8-րդ դարի ուրարտական դարաշրջանի ռազմիկը։ Ահա նա՝ խելացի, կենտրոնացած դեմքով, լայն ճակատով։

Գերասիմովի հայտնագործման շնորհիվ, մենք տեսնում ենք անցյալի մի շարք նշանավոր մարդկանց, պատմական անձնավորությունների դեմքեր։ Նա հաջողությամբ վերականգնել է Յարոսլավ Իմաստունի, Յուրի Դոլգորուկիի, Թեմուրի, նրա թոռ, միջնադարյան նշանավոր աստղաբաշխ Ուլուգ բեկի, ծովակալ Ուշակովի և ուրիշ շատերի դիմանկարները։

Այն, ինչ թվում է, թե թաղվել է դարերի խորքում, ինչի մասին մեզ պատմում են տարեգրությունները, առասպելները, այդ բոլորը հարյուր հազարավոր տարիներ հետո վերականգնվում են սովետական գիտնական Գերասիմովի շնորհիվ։ Նրա գյուտը մեծ հեռանկարներ է բացում ազգագրության, մարդաբանության և պատմության համար։



Ուրարտուի դարաշրջանի ռազմիկ

Այս բոլորի մասին շատ հետաքրքիր և մանրամասն կերպով պատմում է Լյապունովը իր «Դարերի խորքից» գրքում։

Կարդացեք այդ գիրքը։

Գ. ԽՈՍՏԻԿՅԱՆ

## «ԲՆԱԳԻՏԱԿԱՆ ԶՐՈՒՅՑՆԵՐ»




Ձեզանից շատերը Երևանի կենդանաբանական այգում կրիա տեսած կլինեն։ Դա փափկամարմին, դանդաղաշարժ և անվնաս կենդանի է։ Կրիան այնպիսի ամուր պատյան ունի հագին, որ պաշտպանում է նրան նույնիսկ իր ամենաուժեղ թշնամիներից։ Բայց դուք տեսել եք կրիայի միայն մի տեսակը։ Աշխարհում գոյություն ունեն կրիաների բազմաթիվ տեսակներ, սկսած հունական կրիայից, որն ամենափոքրն է (16 սանտիմետր երկարություն ունի) մինչև ամենախոշորները։ Դրանք ապրում են խաղաղ օվկիանոսի կղզիներում, ունեն երկու մետր երկարություն, մեկ մետր բարձրություն և 600 կիլոգրամ ծանրություն։

Կրիաները զարմանալի դիմացկուն կենդանիներ են։ Գիտնականները փորձի համար հեռացրել են կրիայի ուղեղը, և այդ վիճակում նա երկար է ապրել։ Կրիաների մասին դուք շատ հետաքրքիր տեղեկություններ կգտնեք Ց. Աղասարյանի «Բնագիտական զրույցներ» գրքում։

Բացի այդ, դուք այդ գրքում կծանոթանաք բուսական և կենդանական աշխարհի ուրիշ շատ հրաշալիքների։ Այնտեղ կկարդաք հինգ հազար տարի ապրող սերվոյա հսկա ծառի, մեղրանձրև թափող ագավայի մասին, որի նեկտարից մեքսիկացիները մեղրանյութ են պատրաստում։ Կծանոթանաք կակտուսների բազմաթիվ տեսակներին, «գիշերային իշխանուհուն», որն արտակարգ գեղեցիկ ծաղիկ ունի և ծաղկում է միայն գիշերը, իսկ լուսադեմին՝ թառամում։ Կծանոթանաք ծովային բեռու պատմություններին, թռչող էլեկտրական ձկներին, որոնք որսը ոչնչացնում են իրենց մարմնից արձակվող էլեկտրական հոսանքով։

«Պուրպուր» գեղեցիկ հեքիաթում հեղինակը պատմում է պուրպուր գույնի առաջացման պատմությունը և միաժամանակ ծանոթացնում ծովային բազմաթիվ հետաքրքիր կենդանիների հետ։

Իսկ հյուսիսարնակ մի քանի կենդանիների՝ փոկերի և սպիտակ արջերի մասին խոսվում է բևեռախույզի պատմության մեջ։

Կարդացեք այդ գիրքը, նա կհարստացնի ձեր բնագիտական գիտելիքները։

Ա. ՂՈՒԿԱՍՅԱՆ




Ց. ԱՂԱՍԱՐՅԱՆ

Վահանը ծաղկամանում մի պոմիդորի սերմ էր ցանել։ Շատ մեծ եղավ նրա ուրախությունը, երբ այդ սերմից փոքրիկ թուփ առաջացավ։

Ամեն օր դպրոցից վերադառնալով նա վազում էր ննջարան և ստուգում լուսամուտի գոգին դրըված ծաղկամանը։

— Ինչ արա՛գ է մեծանում,— հիացմունքով կրկնում էր նա ամեն անգամ։ Շուտով Վահանը ստիպված եղավ տեղափոխել տախտակից շինված մեծ ամանի մեջ։

— Իզուր ինչո՞ւ ես փոխում, մեկ է, շուտով ոչնչանալու է,— ասաց քույրը։

— Ո՛չ, Լուսի՛կ, մի՞թե դու չես լսել, որ պոմիդորը բազմամյա բույս է։ Սա պետք է մեծանա, մեծ ծառ դառնա,— պատասխանեց Վահանը։

— Է՜, հնարում ես։ Ո՞վ չի իմանում, որ պոմիդորը գարնանը ցանում են, աշնանը բոլորովին չորանում է։

— Լավ, հետո կհամոզվես, որ ճիշտ եմ ասում։ Իսկ գիտե՞ս ինչ է նշանակում պոմիդոր։

— Պոմիդոր նշանակում է բանջարանոցային բույս, որը շատ հարուստ է վիտամիններով։ Դու էլ կարծում ես, թե միայն ինքդ գիտես և սիրում ես ուրիշներին հարցաքննել,— նեղացավ Լուսիկը։

— Ո՛չ։ Պոմիդոր նշանակում է ոսկե խնձոր և իտալական ծագում ունի։ Հայրենիքը հարավային Աֆրիկան է։ Եվրոպայում սկսել են մշակել 16-րդ դարում, բայց 250 տարի պահել են միայն որպես դեկորատիվ բույս։ Անհայտ պատճառներով նրան համարում էին թունավոր և վախենում էին ուտել։ Ռուսաստանում առաջին անգամ մշակել են 1850 թվականին՝ Օդեսայում։

— Վահա՛ն, որտեղի՞ց գիտես այդ բոլորը։

— Ես կարդացել եմ, բացի այդ, բնագիտական խմբակում անցել ենք։

Անցան օրեր. պոմիդորի թուփը բավական մեծացել էր։ Կանաչ ֆոնի վրա փայլում էին դեղին ու կարմիր պտուղները։

Բայց Վահանը անհանգստանում էր, որ աշնան արևը չէր կարող հասունացնել պոմիդորը։ Տերևներն արդեն քլորոֆիլի պակաս էին զգում, դեղնում, իսկ պտուղներն այլևս չէին կարմրում։

— Պետք է արհեստական լույս տալ,— որոշեց Վահանը։ Նա ընկերոջ հետ միասին էլեկտրալար անցկացրեց։

Շուտով պոմիդորի թփի վրա մի մեծ լուսամփոփով էլեկտրալամպ վառվեց։

Երկրորդ տարին Վահանը բարձրանում էր աթոռի վրա և քաղում կարմիր պոմիդորները։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






Շապիկի առաջին էջը՝ նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ
Չորրորդ էջը՝ նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Ձեռագրերը չեն վերադարձվում





„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ Պատվեր 387։ Տիրաժ 4500։ Տպագրական 4,1 Ստորագրված է տպագրության 5/IV 1956 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*

## ՈՒՇԱՑԱԾ ՄԱՆՈՒՇԱԿԸ

Սարալանջերին, դաշտերում արձակ
Բացվել էր արդեն չքնաղ գարուն,
Երբ աչքը բացեց մի մով մանուշակ
Ու նայեց շուրջը, նայեց հեռուն:
Վերից արևն էր քնքշորեն ժպտում՝
Սիրտը լայն պարզած գարնան տոնին,
Մամխենու փոքրիկ բողբոջն էր պայթում,
Ծաղկաթերթեր էր թափում հողին:
Անզուսպ հրճվանքով երգում էր առուն,
Ու հավքերն էին երգում զվարթ,
Թովիչ էր այնպես դաշտերի հեռուն,
Ու թավիշ կանաչ՝ անտառ ու արտ:
Մեղմ հովը սուրաց անուշ կարոտով,
Եվ մանուշակը օրորվեց լուռ,
Շուրջը լցվել էր թեև իր հոտով,
Բայց նա ամոքխած կանգնեց տխուր:

ԱՐՄԵՆԱԿ ՂԱԶԻՆՅԱՆ

(Նոյեմբերյանի Կոթի գյուղի դպրոց)

## ԻՄ ՈՒԼԻԿԸ

— Գիտե՞ք, ունեմ մի ուլիկ,
Սևուկ է ու սիրունիկ,
Փոքրիկ է նա ինձ նման,
Շատ եմ սիրում ես նրան:
Ամեն, ամեն առավոտ
Ինձ հետ տանում եմ արոտ,
Ու բուրավետ խոտի մեջ
Արածում է նա անվերջ:
Ես էլ նստած շվաքում,
Իմ շվին եմ նվագում,
Կամ թե գետում սառնորակ
Լողում ճարպիկ ու արագ:
Իսկ երբ մթնում է նորից,
Տուն ենք դառնում արոտից,
Ու փարվում ենք սրտագին՝
Նա իր մորը, ես էլ՝ իմ:

ՌԵՆԱԼ ՄԻՐԶՈՅԱՆ

## ՄԻՇՏ ԳԱՐՈՒՆ

Զինջ երկնքում արևն անմար
Հրճվում է մանկան պես,
Իմ մեծ երկրում լուսապայծառ,
Թովիչ գարուն է, մի տե՛ս:
Այստեղ՝ սարում ծաղկանց միջից
Պաղ աղբյուրն է ծիծաղում,
Ես էլ նրա սառն ակունքից
Ջուր եմ խմում, ուժ քաղում:
Զինջ երկնքում արևն անմար
Հրճվում է մանկան պես,
Իմ մեծ երկրում ձմեռ, ամառ,
Միշտ գարուն է ժպտերես:

ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆ

Երևանի Թումանյանի անվան դպրոց

## ԳԱՐՈՒՆ

Ինչպես մի նուրբ թիթեռնիկ՝
Գարունն եկավ իմ այգին
Ու վար իջավ ծառերի
Դեռ քնած մերկ ճյուղերին:
Այնքան լուռ ու անձայն,
Այնքան թեթև իջավ ցած,
Բայց խոր քնից ցուրտ-ձմռան՝
Այգիս զարթնեց ու ժպտաց:
Ու բացվեցին բյուրավոր
Նախշուն-նախշուն ծաղիկներ՝
Հազար գույնով ու բույրով
Լցրին այգին իմ չահել:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԹՈՐՈՍՅԱՆ

## ՃԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Թաքնվում է արևից,
Չի վախենում նա հովից.
Աչիկ ունի կապուտակ,
Միշտ անում է թփի տակ:

Գրավում է իր հոտով մեզ,
Երբ պոկում ես, ծակում է քեզ.
Ծաղիկների թագուհին է,
Սոխակների սիրելին է:

ԼՅՈՒԴՄԻԼԱ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Երևանի Թումանյանի անվան դպրոց

